⊃13

Տուն–տեղ դնում
Ու ձագ հանում,
Բայց մեր հոգու խոր խորքերում
Հոտն ենք փնտրում,
Որից մի օր զատվեցինք ու մոլորվեցինք...
Հոտն ենք փնտրում,
Որ խոտը համ ու հոտ առնի կորած զառան,
Գառն էլ գույնը հիշողությամբ
վերականգնի ջահել խոտի։
Հոտն ենք փնտրում
Կարոտ երկրի կարոտ լեռան ծանոթ լանջին,
Որ իջնում էր վերջալույսին
Քաղցրանվագ մեր սրնգի ձայնն ականջին։
30.05.2006թ. Մոսկվա

***

Ես Մոսկվայի մեջ
Նույնն եմ,
Ինչ խեցին
Եռման ջրի մեջ՝
Թե դուրս գա խեցուց, եռացող ջուր է,
Իսկ թե մնում է...
Խխունջ եմ ասես,
Հայաստանից դուրս,
Եռման ջրի մեջ,
Ոչ իմ բնի մեջ կարող եմ ապրել,
Ոչ էլ բնից դուրս...
2007 թ.

## Ողբամ Ձքեզ, Արծվաշեն

Ես ի՞նչ անեմ Արծվաշեն,
Որտե՞ղ փնտրեմ լորերդ,
Ինչպես կանչեմ, որ ձայնիս
Արձագանքեն ձորերդ։
Իմ հայրումայր Արծվաշեն,
Իմ մանկության խնկի ծառ,
Ես ինչ անեմ, որ շիրիմիդ
Գոնե մեկ–մեկ այցի գամ։
1998 թ.

## ԻՆՔԴ ՔԵԶ ՀԵՏ

Այնպես արա,
Որ չամաչես ինքդ քեզնից,
Որ չդատվես դու քո ներքին դատավորից,
Չարտաքսվես դու քեզանից։
Այնպես արա,
Որ երբ ինքդ քեզ հետ մնաս,
Բաց ճակատով նայես դու քեզ,
Բաց աչքերով դու քո աչքին,
Չխռովես դու քեզանից
Ու հաշտ մնաս ինքդ քեզ հետ։
Եվ վերջապես այնպես արա,
Որ դու քեզ հետ բաժակ բռնել կարողանաս,
Քեզ հետ զարկել,
Քեզ հետ խմե՜լ կարողանաս։
11.08.1999 թ.

***

Մեր արմատներից մենք հեռացել ենք,
Տերևներով ենք ջուր առնում երկնից։
Մեր կամքով մենք մեզ ցեղասպանել ենք,
Եվ նեղանում ենք մենք ուրիշներից։
Բանալիներն ենք պահում գրպանում,
Մեր «Հորովելն» ու մեր «Քելե լաոն»,
Բայց ինչ քարին տա գլուխն իր
Փոքրիկ գըրպանը հայոց հայոց պանդխտոց,
Եվ որտե՞ղ դնի,
Եվ որտե՞ղ պահի,
Ո՞ր մեկը պահի
Քսան դարեկան գանձերը հայոց։

Արցունքին հաջորդեց ժպիտը, ծիծաղը.

***

Հայկանուշը հանդիպեց Պապունց Սուսամբարին։ Նա սգավորի տեսք ուներ։ Հայկանուշն արդեն համոզված էր, որ դժբախտ դեպք է պատահել, չգիտեր ինչպես սկսեր զրույցը։ Վերջապես Սուսամբար ջան, տեսքըդ այն չէ, ինչ-որ բա՞ն է պատահել։ Հույս ունեմ, որ ամեն ինչ կարգին է։

– Չէ, Հայկանուշ ջան, – արցունքն աչքերին, – երկու օր առաջ Չակիս սատկեց, – ու սկսեց փղձկալ։

Հայկանուշը լռեց, ինչպես պատեհ է կարեկցանքի պահին, իսկ Սուսամբարը շարունակեց.

– Հայկանուշ ջան, տասը տարի ծոցս եմ պահել, հեշտ չէ։

– Էնա, ասա, ամուսին էս կորցրել, էլի, – առանց կատակի ասաց Հայկանուշը։

– Ինչ ամուսին, ախչի, երկու ամուսին նրա մի գլխի հետ չեմ փոխի, – ասաց Սուսամբարը ու շարունակեց հեկեկալ։

***

Գորիս։ Մի մարդ օղի է վաճառում։Սիբիրից եկած մի ռուս մոտենում է.

– Сколько стоит?

– ... ռուբլի, մատաղ։

- А денег нет. Дашь?

– Տամ, մատաղ, կուղարկես։

– А по какому адресу?

– Ասրի դայի, մատաղ։

Վանյան օղին խմում է, գնում Սիբիր ու փողն ուղարկում. Армянская республика, го-род Горис, Асри Даи... и с деньгами дает, и без денег.

Փողն իհարկե տալիս են Ասրի դայուն։

***

Հայկանուշը սպորտային համազգեստը հագած, սպորտային պայուսակը ուսը գցած իջնում էր աստիճաններով։ Դուռը բացվեց և դուրս եկավ հարևանը՝ Շամամ աքիրը.

– Հայկանուշ, ի՞նչ խաբար ա, էս ի՞նչ ես հագել, էս ու՞ր ես գնում։

– Կարատեի։

Շամամ աքոր զարմանքը սահման չուներ.

– Հիսուն տարեկանում կարատե՞, – կարծես ինքն իրեն ասաց հարևանը։ Նա նաև մտածելով, որ Հայկանուշը շատ կարդալուց խելքը գցել է, որոշեց էլ հարցեր չտալ, բայց մեկ էլ չհամբերեց.

– Անելն ամոթ չլինի, Հայկանուշ, հիսուն տարեկանում կարատեն ինչի՞ն է պետք, – քաղաքավարությունից մի քիչ էլ ժպտալով։

– Տղայիս ամուսնացրել եմ, – լուրջ պատասխանեց Հայկանուշը...

Նրա ստեղծագործությունը՝ լինի մայրական, պանդխտության, հայրենիքի կարոտի, թե խոհական-փիլիսոփայական թեմայով, գրված է անկեղծ ապրումով, ինչը և հոգեհարազատ է դարձնում հայրենիքից հեռու, օտարության մեջ դժվարություններով ու կարոտով ապրող հայրենակիցներին։

Մանկավարժ Ասյա Չախալյանը տվեց իր գնահատականը, խոսեց ստացած տպավորությունից. «Ինչպես մութ գիշերին երկնքում հայտնված աստղերն են լուսավորում մեր ճանապարհը, այդպես էլ այս օտար հողում այսպիսի բանաստեղծական Աստղերն են լուսավորում մեր ուղին։

Օտարության մեջ ի՞նչը կարող է փրկել հային, եթե ոչ հայ մշակույթի նվիրյալները, հանձինս Լաուրա Բալյանի։ Ձեր ստեղծագործություններով Դուք ստիպեցիք մեզ մտորել, խորհել, տառապել, լռել, թախծել, հուզվել և ժպտալ։ Եվ այս ամբողջը մեկ երեկոյի ընթացքում։ Շնորհակալություն առաջին հայ կին աֆորիստին, բանաստեղծուհուն, գրողին, մարդուն՝ Լաուրա Բալյանին»։

Երեկոյի վերջում եղան կատարումներ Կոմիտասի երգերից։

Պատրաստ է տպագրության Լաուրա Բալյանի, արդեն տպագրված, «Ականջդ բեր ասեմ» գրքի ռուսերեն թարգմանությունը։ Բարի երթ ցանկանք Հայաստանի արժանի դստերը։

*Ամալյա ԻՍԱՅԱՆ*

# «ԱՐԵՎԱՀԱՄԸ» ԱՂԱՎԱՂՎՈՒՄ Է

*«Ես իմ անուշ Հայաստանի արեւահամ բառն եմ սիրում»*
**Ե. ՉԱՐԵՆՑ**

Դժվար է պատկերացնել, թե ինչ կկատարվեր մայրենին խենթորեն պաշտող պոետի հետ, եթե նա տեսներ, թե ինչ վիճակում է այսօր իր «արևահամը»։ Նա երևի իսկապես կխենթանար։ Երբեմն թվում է, թե ՍՍՀՄ-ի կազմում մեր լեզուն շատ ավելի բարվոք վիճակում և «հոգատար» ձեռքերում էր, քան անկախ Հայաստանում պետական լեզվի կարգավիճակով, ահագնացող գռեհկության և մարտնչող տգիտության միջավայրում, գրեթե անպաշտպան։ Գուցե ՍՍՀՄ-ի կազմում ինքնապաշտպանական հզոր ռուսերենին կուլ չգնալու բնազդը ավելի ուժեղ էր։ Հիմա այդ վտանգը չկա, բայց կա անհոգ ու անտարբեր վերաբերմունք և ինքնավերման հանձնված լեզու։ Պարզորոշ նկատվում է ասելիքը կիսախառը, երկլեզու արտահայտելու, հաճախ օտար լեզվից բառացի թարգմանելու սովորույթը։ Վերջերս շատ է տարածվել հավաքական իմաստ ունեցող եզակի ձևով գործածվող բառերը հոգնակիացնելը։ Համոզվելու համար բավական է փոքր-ինչ ավելի ուշադիր հետևել հեռուստահաղորդումներին։ Ցավոք, սխալվում են ոչ միայն հաղորդումների հյուրերն ու մասնակիցները, այլև հաղորդումը վարողները հաճախ ազդեցիկ անհատներ, ճանաչված դերասաններ, որոնք միշտ չէ, որ տիրապետում են գրական հայերենին և ակամա «նպաստում են» մեր լեզվի աղավաղմանը, լեզվի նրբություններին անտեղյակ մեծամասնությունը, նրանց «հեղինակավոր» խոսքը ընդունում է որպես նմուշ ընդօրինակելու համար։ Բարձրաստիճան այրերից մեկն իր ամանորյա ողջույնի խոսքում մաղթեց «հաջողություններ և երջանկություններ»։

⊃15

# Հեռավոր այմարները խոսում են մեր մայրենիով

**Պարզվում է՝ Կենտրոնական Ամերիկայում՝ Տիտիկակա լճի ավազանում, ապրում է մի ժողովուրդ՝ այմարա, որը լեզվական կապ ունի հայերի հետ: Նրանք գործածում են բազմաթիվ բառեր, որ հայերենի փոխառություններ են: Այս բացահայտման հեղինակը բանասիրական գիտությունների թեկնածու Մերի Սարգսյանն է: Նա ռուսական բանասիրության մասնագետ է, թարգմանություններ է արել ռադիոֆիզիկայի, ճարտարապետության ոլորտներում, հայերեն է թարգմանել ակադեմիկոս Պարիս Հերունու «Հայերը եւ հնագույն Հայաստանը» գիրքը: 2011 թ. նրա թարգմանությամբ տպագրվեց Անաստասիա Ցվետաեւայի «Մոգական զանգահարության վարպետը. ասք հանճարի մասին» գիրքը՝ հայազգի երաժիշտ Կոնստանտին Սարաջեւի մասին, որը մեկ օկտավայում լսում էր 1701 հնչյուն այն դեպքում, երբ սովորական մարդն ի վիճակի է լսել ընդամենը 23: Մերի Սարգսյանի հետ զրույցը այմարա ժողովրդին առնչվող ուշագրավ բացահայտումների մասին է:**

- Միշտ մտածում էի, թե ինչ է նշանակում «Սասուն» բառը, ինչու Աճառյանի կամ մեկ այլ բառարանում դրա ստուգաբանությունը չկա: Մենք ունենք Սասուն երկրի անուն, սարերի անուն եւ «անսասան» բառը, ուրիշ ոչինչ: Որոշ գրքերից իմացա այմարա հին ժողովրդի մասին, որը, ըստ ուսումնասիրողների, աշխարհի ամենահին լեզուներից մեկն ունի, իր մշակույթով ծաղկել է 15 հազար տարի առաջ եւ ունեցել է լեգենդ, որը կրկնվում է մի քանի ժողովուրդների մոտ: Պատմում են, որ ծովով իրենց մոտ եկան սպիտակամորթ, զանգրահեր, շիկահեր, կապտաչյա մարդիկ, որոնք համարվել են իրենց աստվածները, որովհետեւ գալով այստեղ՝ իրենց սովորեցրել են ձուլագործության գաղտնիքները, նաեւ ճարտարապետական գաղտնիքներ, սովորեցրել են միակնությունը: Այդ ժամանակներում ձուլագործությունն առաջին հերթին Հայաստանում է եղել:

Շումերերեն գրություններում նաեւ հիշատակվում է անուն՝ Իոաննեշ: Դժվար չէ կռահել, որ դա Հովհաննեսն է: Կարելի է ենթադրել, եթե չպնդել, որ եկվորները հայեր են եղել: Նույն լեգենդում կա իրենց «Վիրակոչա» անունը, եւ եթե շատ համարձակ լինենք, ապա կարող ենք ստուգաբանել որպես «ի վերուստ կոչված»: Գոյություն ունի Կալասասայա հրապարակ, որտեղ կանգնեցված է Վիրակոչայի բարձր արձանը՝ շուրջը քարեր: «Կալասասայա» բառը այմարերենից թարգմանվում է «կանգուն քարեր»: «Կալ»՝ հայերեն քարն է: «Քար» հայերեն արմատը մտել է աշխարհի բոլոր ժողովուրդների լեզուների մեջ:

Ես հիշեցնեմ, որ «Սասունցի Դավիթ» էպոսում Սանասարի եւ Բաղդասարի կառուցած քաղաքն անվանակոչած ծերուկը բացականչեց. «Սա հո սասունն է», այսինքն՝ պինդ, ամրակուռ: «Կալասասայա» եւ «Սասուն» նույն նշանակությունն ունեն՝ անսասան, պինդ: Ես որոշեցի ուսումնասիրել այդ լեզուն, հասկանալ, թե մեր Սասունն ու Կալասասայան ինչպես համընկան: Գտանք 600 բառանոց այմարա-անգլերեն բառարան: Վեց ամիս ինքս ինձ թեւ տալով ու համոզելով, ինքս ինձ չհավատալով ուսումնասիրեցի: Իմ առաջ բացվեց մի զարմանահրաշ աշխարհ: 57 բառ՝ մոտ 10 տոկոսը, հայարմատ էին: Գիտության դոկտորներն ասացին, որ նույնիսկ երեք բառի նույնարմատ լինելը առիթ է մտածելու, որ կա լեզվական փոխառություն:

***- Է՞լ որ բառերում համընկնումներ կան:***

- Օրինակ՝ «փիսի» նշանակում է կատու, «փուրակա»՝ փոր, «արմջանա»՝ մոռանալ, «կիտա»՝ ձկնկիթ, «ջուրա»՝ ջուր: 2004թ. հոդված պատրաստեցի եւ տարա ԳԱԱ «Լրաբերին»: Մեծ ոգեւորությամբ ընդունեցին եւ դրեցին հերթի: Երկու տարի մնաց հերթում, հետո էլ գլխավոր խմբագիրը կանչեց, թե՝ չենք տպելու, հոդվածը խիստ հայամետական է: Ասի՝ թուրքամետակա՞ն պիտի լիներ, որ տպագրեիք: Հոդվածը տպագրվեց այլ հանդեսներում:

***- Իսկ այդ «ենթադրյալ» հայերը ձուլվել են տեղացիների՞ն, վերջիններիս սերունդները կենսաբանորեն նման չե՞ն հայերին:***

- 2009 թ. Նիկարագուայից էլեկտրոնային փոստով նամակ եկավ: Այդ երկրի կենսաբանական գիտությունների դոկտոր, ազգությամբ ֆինն Սեպոտիուսանենը գրում էր, որ հիացած է իմ հոդվածով, մի տասնհինգ միջազգային կոնֆերանսներում զեկուցել է այն: Հոդվածը հաստատել էր նրանց կենսաբանական տեսությունն այն մասին, որ որոշ հին ժողովուրդներ կարող են ունենալ ընդհանուր գեներ: Այմարների մեջ նրանք հայկական գեներ են գտել: Ես չեմ կարող դա ոչ պնդել, ոչ հաստատել, քանի որ կենսաբան չեմ, կպնդեմ միայն լեզվական նմանությունը: Եվ այդ գիտնականը խնդրեց շարունակել հոդվածը: Ուղարկեց նոր՝ արդեն 3 հազար բառանոց բառարան այմարա-իսպաներեն, եւ, բնականաբար, նոր բառեր ավելացան իմ հոդվածում:

***- Հիմա ուսումնասիրությունը շարունակո՞ւմ եք:***

- Արդեն հաստատվել են լեզվական նմանությունները: Ես ուրախ եմ, որ դա հայամետ աշխատանք է, ու երեւի այդ պատճառով էլ շատերի դուրը չի գալիս:

***- Պարիս Հերունու հայագիտական աշխատությունը, որ թարգմանել եք, երեւի նույնպես շատերի դուրը չէր գալիս:***

- Նա աշխատությունը գրել է անգլերենով, որպեսզի աշխարհը կարդա, որ նախաքրիստոնեական Հայաստանն ունեցել է շատ բարձր մշակույթ, գիր, եւ որ սխալ է, թե Մաշտոցի ականջին Աստված փսփսաց, ու նա էլ տառերը շարեց, ու մենք ունեցանք զանձեր՝ շարականներ, որ աղոթքներ են, ու հանկարծ «ծլեց» Խորենացին, որն առաջին ժամանակագիրն է աշխարհում... Այդպես հնարավոր չէ:

***- Ինչո՞ւ է կեղծվում այդ հարցը:***

- Այն էլ մեր եկեղեցու կողմից: Որ հավատացյալները հանկարծ չկասկածեն, որ Քրիստոսը... Քրիստոսն էլ դեմ կլիներ ամեն տեսակ կեղծիքի: Ինչպե՞ս մենք կարող էինք միանգամից «իմանալ զբանս հանճարոյ» եւ հանճարներ տալ աշխարհին: Մարդկության պատմությունն ընթանում է դանդաղ, էվոլյուցիոն ճանապարհով: Նույնն էլ լեզվի զարգացումը: Հայոց լեզուն ունի 11 հազար բուն արմատ, որից 4 հազարը լրիվ, իսկ 5,5 հազարը մոտիկ իդենտիկ են սանսկրիտի՝ հին հնդկերեն մեռած լեզվի հետ: Հայ հին գրաբարը եւ սանսկրիտն ունեն միարմատ չորս հազար բառ: Հնդկաստանում ասում են, որ սանսկրիտը հայերեն գրաբարի փոքր քույրն է: Հնդկական «Ռամայանա» էպոսը ստեղծված է եղել ոչ թե Հնդկաստանում, այլ իրենց բուն հայրենիքում, եւ այդ էպոսում կա կարոտ, ցավով ու սիրով հիշում են իրենց հին երկիրը, որն ուներ «կապույտ, ձյունապատ, բարձրաբերձ սարեր»: Ուղղակի կրկնում եմ շատ ուսումնասիրողների, որոնք պնդում են, թե քանի որ Հայաստանը հանդիսանում է քաղաքակրթության օրրանը, հնդիկներն այստեղից են գնացել Արեւելք:

***Գագիկ ԱՂԲԱԼՅԱՆ***

14→

Նույն սխալը «յուրացրել էին» երկու հանրահայտ դերասաններ, որոնք գովազդի ժամանակ ինքնագոհ ներկայացնում էին «թեյերի, սուրճերի բազմաթիվ տեսակներ»: Տարբեր ուտեստներ ներկայացնող հաղորդումներից մեկի ժամանակ էլ ստուդիա հրավիրված տնային տնտեսուհին ուտեստին «աղեր ու պղպեղներ» առաջարկեց խառնել: Ցավալին այն է, որ «բազմամոլուցքով» տառապում են նաև կրթության ոլորտի պատասխանատուները: Կրթության բաժնի մի տեսուչ «առարկաների դասավանդման» փոխարեն օգտագործեց «դասավանդումներ» ձևը, ապա «բացահայտեց», որ «երեխաները մեր ապագաներն են»:

«Բարեհաջող» տարածվում է նաև մայրենին աղավաղող «թարգմանամոլուցքը», որի ազդեցությամբ կատարվում է ռուսերենից բառացի թարգմանություն, և շատ հաճախ կարող ենք լսել, ասենք, «ակնոցները հագնել» խայտառակ ձևը «ակնոց դնելու» կամ «ակնոց կրելու» փոխարեն: Նման սխալները բազմաթիվ են, բայց զարմանալին այն է, երբ մարդկանց մի մասը, սովորելով, ավարտելով դպրոցը, ապա նաև բուհը, անգամ մասնագիտական կրթություն ստանալով, ձեռք է բերում սահմանափակ գիտելիքներ, չի էլ գիտակցում իր սխալը: Սա է պատճառը, որ ոչ միայն առօրյա խոսքում, այլ և եթերում սովորական են դարձել «եգրորդ, դբրոց, գործարան, ընգեր» և նմանատիպ սխալները: Ակամա կարոտ ու պահանջ ես զգում լսելու ոչ վաղ անցյալի մեր մեծերի փառահեղ ու դյութիչ խոսքը, նորից զգալու մեր լեզվի հմայքը, հպարտանալու նրանով ու համոզվելու, որ հանցանք է մայրենի լեզվի այլասերումն ու գռեհկացումը: Ուրախալի ու խրախուսելի է, որ վերջերս նաև երիտասարդությունն է դուրս եկել պաշտպանելու, անաղարտ պահելու «դարերից եկող, դարեր գնացող» մեր «արևահամ» լեզուն:

***Էդուարդ ՄՈՒՐԱԴԽԱՆՅԱՆ***

# ՅԱՒԵՐԺ ՓԱ՛ՌՔ ՆԱՀԱՏԱԿԱՑ

## Նորագոյն Զինեալ Ազատագրական Պայքարի Նահատակներու Օրուան առիթով

7 Օգոստոս 1982-ին իրագործուած «Կարին» (Էրզրում) պատմական գործողութեամբ խորհրդանշուող Նորագոյն Զինեալ Ազատագրական Պայքարի Նահատակներու Օրուայ 30-ամեակին առիթով կը խոնարհինք Պայքարի բոլոր նահատակներու, մասնաւորաբար՝ գործողութիւնն յաջողութեամբ իրականացուցած հերոս նահատակներ Զօհրապ Սարգիսեանի ու Լեւոն Էքմէքճեանի թանկագին յիշատակին առջեւ ու խորազգաց կերպով կը ցաւակցինք անոնց մեծարգոյ ծնողներուն, հարազատներուն եւ համայն պայքարող ու չընկրկող Հայութեան՝ կիսելով նաեւ անոնց արդար հպարտութիւնը:

Միտքբինքնինիզօրուչէկացութիւններյեղաշրջելու,պատմութեան ուղի փոխելու, իրերու զարգացում պարտադրելու, եթէ բացակային յանձնառու բազուկը, հետեւողական աշխատանքն ու նուիրական գործը, որոնք կը մարմնաւորեն ու իրողութեան կը վերածեն մտայղացումն ու ծրագիրը: Հետեւաբար, Ազատագրական Պայքարի իւրաքանչիւր ծրագիր, որքան ալ այդ ծրագիրն ըլլար անթերի, մշակուած ու կատարեալ, անկարող պիտի ըլլար կացութիւններ յեղափոխել, ուժերու յարաբերակցութիւն պարտադրել, եթէ չըլլար այդ ծրագիրներն իրականութեան վերածող անկոտրում եւ անսպառ հաւատքով լիցքաւորուած նուիրեալներու հոյլ մը, անձնուրաց եւ իրենց հետապնդած նպատակի արդարութեան ամբողջապէս համոզուած հայորդիներու բանակ մը:

Սփիւռքի ծնունդ այս լաւագոյն նուիրեալները - որոնց մեծ մասը իրենց հայրենի երկիրն ու հողը չտեսած, ինքզինքը զոհաբերեց յանուն Հայաստանի - յաջողեցան ամբողջովին անտեսման ենթարկուած ու մոռացութեան մատնուած Հայկական Հարցը քաղաքական այժմէական հարցի վերածել:

Մաքրելով տասնամեակներու մոռացութեան փոշին, անոնք բարեփոխեցին հայկական մտածելակերպը, անհետացուցին յուսահատութեան եւ օտարամոլութեան ախտն ու պարտուողական հոգեբանութիւնը՝ Հայութեան մօտ վերակենդանացնելով եւ արմատաւորելով զարթօնք, հպարտութիւն ու երբեմնի առասպելական ինքնավստահութիւնը, միասնութեան ձգտումն ու յաղթանակատենչ մարտունակութիւնը:

Միմիայն գործով, ճակատագրական յանձնարարութիւններ ստանձնելով կրնային իրականանալ այս արմատական ու հսկայական փոփոխութիւնները եւ միմիայն գործով կարելի պիտի ըլլայ ընթանալ յայտարարուած ուղիով մինչեւ մեր հետապնդած իրաւունքներու ամբողջական վերականգնումը:



Ազգային ազատագրական պայքարը, որեւէ պայքար, անհնար է պատկերացնել առանց զոհողութեանց եւ կորուստներու: Ասիկա դառն, բայց տարրական ճշմարտութիւն է:

«Կարին» (Էրզրում) փառապանծ գործողութեան 30-ամեակին առիթով, կը վերանորոգենք մեր անբեկանելի ուխտը՝ շարունակելու Սրբազան Պայքարը յանուն Հայութեան ոտնահարուած ազգային և մարդկային իրաւունքներու վերատիրացման՝ թշնամիները հարուածելով անխնայօրէն եւ ամէնուրեք՝ Հայկ Նահապետի բելասատակ նետուաղեղով ու Սասունցի Դաւիթի հզօրահօր եւ հատու թուրով:

Բիւր յարգա՜նք մեր թանկագին նահատակներու մշտակենդան յիշատակին:

**7 Օգոստոս 2012 թ.**

**Հայաստանի Ազատագրութեան**
**Հայ Գաղտնի Բանակ**

***Քննարկում***

# Երբ գործը դառնում է իրականություն

Հասարակության առջև անընդհատ ծառանում են նորանոր սոցիալական խնդիրներ՝ կլիմայափոխություն, գլոբալացում, բնակչության ծերացում և այլն:

Ավանդական լուծումները և դրանց իրականացման ավանդական միջոցները, ինչպես օրինակ՝ կառավարության որոշումները, քաղաքացիական հասարակության աշխատանքը, այլևս արդյունավետ չեն: Եվ մարդիկ ստիպված են փնտրել սոցիալական խնդիրների լուծման նոր ճանապարհներ: Այս խնդիրների լուծումներն է, որ առաջարկում է սոցիալական ինովացիան:

**Ի վերջո, ի՞նչ է սոցիալական նորարարությունների ճամբարը եւ ո՞րն է նրա նպատակը:**

Սոցիալական նորարարությունների



ճամբարը մեկտեղ է բերում մարդկանց, գաղափարներ և թվային տեխնոլոգիաներ՝ առցանց սոցիալական նորարարություններ ստեղծելու համար:

Սոցիալական նորարարությունը սոցիալական խնդիրները նոր գործիքներով լուծելու մեթոդ է: Այն կարող է վերաբերել առողջապահության, կրթության, բնապահպանության, արդյունաբերության, համայնքների կամ ցանկացած այլ խնդրի:

Մեկտեղ բերելով տարբեր գիտելիքների ու տաղանդի տեր մարդկանց՝ ճամբարը կենսական գաղափարը կամ ձևակերպված խնդիրը վերածում է կոնկրետ լուծման և կոնկրետ ծրագրային փաթեթի: Ճամբարը գաղափարների յուրօրինակ ինկուբատոր է, որում զարգանում են ու կյանքի կոչվում բազմաթիվ նախագծեր:

Մենք հավատում ենք, որ օնլայն աշխարհը հսկայական ներուժ ունի, որ կարող է փոփոխություններ բերել իրական կյանքում: Համացանցը մեզ օգնում է մարդկանց մեկտեղ բերել և ընդլայնում է համագործակցության հնարավորությունները բոլոր ոլորտներում: Նախկինում նման համագործակցության ու արդյունա-

ԴԻՄԱՆԿԱՐ

# Նապոլեոն: Կյանք մահից հետո

**Կան մարդիկ, ովքեր, հասնելով բավականին մեծ բարձունքների, փոխում են պատմության ընթացքը: Նրանց բոլորին հիմնականում համախմբում է մեկ հատկություն՝ իռացիոնալ հավատը սեփական անձի ընտրյալ լինելուն:**



Փարիզի ռազմական ուսումնարանն ավարտելիս ինձ նման բնութագիր էր տվել. «Ինքնահավան է, սիրում է միայնություն, ծայրահեղ ինքնասեր է: Նրա փառասիրությունը սահման չունի»: Հիանալի բնութագիր է այն մարդու համար, ով որոշել է խաղալ երկրագնդի հետ:

Իմ երիտասարդությունը՝ իմ միայնությունն է: Իմ ընկերները միշտ զրուցում էին սիրային արկածների մասին: Ես միայնակ էի: Այն ժամանակվա իմ տառապանքները... ասենք, սովորական երիտասարդական տառապանքներ: Ես պաշտում էի Գյոթեի «Վերտերը»՝ իմ այն ժամանակվա սիրելի վեպը: Ինքնասպանության մասին միտքեր... Բայց ես չունեի դժբախտ սեր, իսկ ես ուզում էի խորը տառապելու իրավունք ունենալ: Եվ ես գտա մշտական տառապանքի առարկա՝ իմ փոքր կղզու անարգված լինելը: Եվ ես օրագրում գրել էի. «Օ՜, իմ հալածված հայրենիք: Չկա այլևս հայրենիք, նույնիսկ եթե շուրջբոլորը մարդիկ են: Հիմա ի՞նչ եմ ես տենչում: Մահ: Բայց ախր ես ընդամենը կանգնած եմ կյանքի շեմին: Իմ հայրենակիցները՝ շղթայով գամված, համբուրում են ֆրանսիական ձեռքը, որը խարազանում է նրանց: Եթե պետք լիներ ինչ-որ մեկի մահը, իմ կղզու ազատությունը վերադարձնելու համար, ես մի վայրկյան անգամ չէի մտածի...»:

Չնայած հիմա ես մտածում եմ, որ իմ տառապանքի իրական պատճառը բոլորովին այլ էր: Ինձ մոտ առաջացել էր վստահություն... որ ես ընտրյալ եմ: Չեմ կարող ասել՝ երբ այդ միտքը հայտնվեց, միանգամայն հնարավոր է, որ այն միշտ էլ կար: Ուղղակի տարիքի հետ նրա ձայնն ավելի ու ավելի էր ուժեղանում: Ես ընթերցում և վերընթերցում էի Պլուտարխին, Կեսարի կենսագրությունը, Ալեքսանդր Մակեդոնացուն, հզոր տիրակալների կյանքի պատմությունները, երկրային աստվածներին՝ որպես իմ ապագա կյանքի ուղեցույց: Ես խանդով նշում էի, թե որ տարիքում էին նրանք իրենց առաջին մեծ հաջողություններին հասել: Չնայած, լինելով բավականին լրջախոհ, ես հասկանում էի՝ հասարակ, աղքատ, ոչ ազնվազարմ... գռեհկության երկրում, որտեղ կարևորը նշանավոր ծնվելն էր... այո, ես ոչ մի ելք չունեի դեպի հզոր ապագա: Հավանաբար իմ մշտական տառապանքների պատճառն հենց այդտեղ էր, որ կար: Իսկ այդ տառապանքի միակ ապավենը՝ ընթերցանությունն էր հզորների մասին:

Հանիբալ... Փղերը բարձրանում են Ալպեր: Փայլուն զորաշարժ և Հանիբալի զորքը արդեն ոտնատակ է տալիս հռոմեական հարթավայրը: Հետո իմ մտքին կգա այդ ամենը կրկնել Իտալիայի պատերազմում: Այո՛, կրկնել, քանի որ երևակայության մեջ ես արդեն նրա հետ միասին բարձրացել էի անհասանելի Ալպերը:

Եվ, իհարկե, հանդիպում Ալեքսանդր Մակեդոնացու հետ: Ես նրա մասին ամեն ինչ կարդացել եմ, բազմաթիվ նշումներ եմ արել նրա գրաված տարածքների ուղղությամբ: Ես անթերի ուսումնասիրել եմ Եգիպտոսի, Պարսկաստանի, Հնդկաստանի աշխարհագրությունը: Ինձ մոտ խելացնոր միտք առաջացավ... Այո, այո, դուք հասկացաք: Այդ ժամանակ բոլորը զառանցում էին հոգիների տեղափոխության մասին... և ինձ ավելի ու ավելի էր թվում, որ ժամանակին ես նա եմ եղել: Եվ ես երդվեցի կրկնել նրա հզոր ծրագրերը մեր այս խղճուկ դարում... կամ էլ մեռնել: Եվ ես կարողացա: Հազարամյակներ անց ես կրկնեցի նրա հնագույն վիթխարի նվաճումները այժմյան վախկոտ աշխարհում, որը այնքան է վախենում ամեն վիթխարի բանից և այնքան է սիրում խղճուկի սահմանը: Եվ աշխարհը չդիմացավ հին ծրագրերի մեծությանը:

Երիտասարդ ժամանակ ես յուրացրեցի՝ համարձակությունը չպետք է սահմաններ ունենա: Համաշխարհայինություն... այդ զգացողությունից է սկսվում հանճարը...

*Էդվարդ ՌԱԴԶԻՆՍԿԻ,*
*«Նապոլեոն: Կյանք մահից հետո»*

16⊃

վետության հասնելու համար պետք կլիներ վարձել բավարար քանակով մասնագետների, կազմակերպել թիմեր ստեղծելու աշխատանքը:

Այսօր համացանցը զգալիորեն հեշտացնում ու անհամեմատ էժանացնում է մարդկանց մոբիլիզացման գործը:

Շատ հաճախ մարդկանց կամավորության ու էնտուզիազմի ներուժը ստեղծում է ավելի արդյունավետ լուծումներ, քան կորպորացիաների վարձած մասնագիտական թիմերը:

Որպեսզի թվային տեխնոլոգիաները հասանելի դառնան սովորական մարդկանց համար, պետք է ստեղծել գործիքներ, որոնք «կթարգմանեն» թվային ին-



ֆորմացիան մարդկային լեզվի:

Մոբիլիզացնել տաղանդները՝ նշանակում է հավաքագրել մարդկանց, ովքեր գիտեն թվային տեխնոլոգիաների լեզուն կամ ունակ են տեսնել սոցիալական խնդիրները կամ հաղորդակցային տեխնոլոգիաների գիտակ են: Դուք կարող եք լինել փորձառու ծրագրավորող, դիզայներ, սոցիալական ակտիվիստ կամ պարզապես ստեղծագործ մարդ:

Ծրագրի մշակման ու իրականացման համար անհրաժեշտ բոլոր գիտելիքները մեկտեղ են բերում համատեղ աշխատանքում արդյունավետ լուծումներ ստեղծելու համար:

Այս հարցերի շուրջ Ծաղկաձորի «Ռոսիա» հյուրանոցում ծավալվեցին Եվրասիա Համագործակցության հիմնադրամի, ՄԱԿ-ի Զարգացման ծրագրի կողմից կազմակերպված եռօրյա հավաքին հրավիրված Հայաստանի տարբեր շրջանների շուրջ 60 մասնակիցների

⊃18

# Հայկական թաղամաս



Հայ-հրեական քաղաքական, մշակութային առնչությունները հազարամյակների պատմություն ունեն: Հայերը Երուսաղեմում բնակություն են հաստատել շատ վաղուց: Մ.թ.ա. 1-ին դարում Տիգրան Մեծը նվաճեց Հրեաստանն ու հազարավոր հրեաների գերելով՝ բնակեցրեց Հայաստանում: Նրանք օգնեցին Տիգրան Մեծին կառուցելու Տիգրանակերտ մայրաքաղաքը: Պատմական վկայություն կա, որ մ. թ. 254 թ.-ից առաջ հայ եկեղեցու եպիսկոպոսները հունական ուղղափառ եկեղեցու հետ համատեղ Երուսաղեմում և Ալեքսանդրիայում (Եգիպտոս) ակտիվորեն ընդգրկված էին Հիսուս Քրիստոսի հետ առնչվող սրբավայրերի բացահայտման և հաստատման, ինչպես նաև վաղ քրիստոնեական գանձերի պահպանման գործի մեջ:

Քրիստոնեությունը Հայաստանում պետական կրոն հռչակելուց հետո շատ հայեր բնակություն հաստատեցին Սուրբ երկրում: Հայկական եկեղեցին առաջիններից էր, որ ներկայացված էր Պաղեստինում: Հայ ուխտագնացները, անտեսելով բազմազան դժվարությունները, պարբերաբար գնում էին Սուրբ երկիր: Նրանցից ոմանք մշտապես բնակություն էին հաստատում Երուսաղեմում՝ հայոց պատրիարքարանի հովանու տակ գտնվող տարածքներում, որոնց կենտրոնը Սբ. Հակոբ եկեղեցին էր: Ի վերջո, պատրիարքարանի մերձակայքում գտնվող այդ տարածքում, որ գտնվում էր Երուսաղեմի Հին քաղաքի հարավարևմտյան կողմում, ձևավորվեց հայկական թաղամասը, որն այսօր կազմում է Հին քաղաքի պարսպից ներս գտնվող տարածքի 1/6-րդ մասը: Ուխտավորները տներ, եկեղեցիներ և մենաստաններ էին կառուցում Երուսաղեմի այլ շրջաններում ևս: Դրանց մի մասն արդեն կանգուն չէ, ինչպես Մուսրարա թաղամասում: Այդ շինությունների գոյության մասին իմացվում է պատահմամբ: Այսպես, 1991 թ. այստեղ պահպանված 15-րդ դարի պատից մի քար պոկվեց, և հնագետները հայտնաբերեցին չորս հրաշալի խճանկար՝ ստեղծված հայ քահանա Էստադիուսի կողմից: Սրանք միակ հին խճանկարներն են, որոնք կրում են հայատառ արձանագրություններ: Թվագրումը ստույգ չէ: Այս հարցում օգնության են գալիս հատակի կրաշաղախի մեջ հայտնաբերված դրամները, որոնցից ամենաուշը 7-րդ դարի կեսերի արաբաբուզանդական դրամ է:

Մ. թ. 4-8-րդ դարերում եկեղեցական շարժումն ամուր արմատներ գցեց քրիստոնեական աշխարհում: Հայկական քաղաքներից հազարավոր վանականներ և ուխտավորներ հաստատվեցին Սուրբ երկրում: Հայկական վանքեր ստեղծվեցին Երուսաղեմից դուրս՝ բլրի վրա, Մեռյալ ծովի մոտ և հարավում՝ Սինայի անապատում: Վանականները դարձան ազդեցիկ ստեղծագործ ուժ և անգին ձեռագրերով ու արխիվներով հարստացրին եկեղեցին:

Հայկական եկեղեցու աճող հեղինակության շնորհիվ եկեղեցու գլխավոր եպիսկոպոսը մ. թ. 5-րդ դարում բարձրացվեց պատրիարքի կարգավիճակի: Երուսաղեմի առաջին պաշտոնապես գրանցված պատրիարքի անունը Աբրահամ էր: Նա մ. թ. 7-րդ դարի կեսերին խարտիա ստացավ և պաշտոնապես ճանաչվեց արաբ խալիֆ Օմար-իբն-Երկրորդ-Խաթաբիի Օմայյադ (Դամասկոս) տոհմի կողմից: Խարտիայում թվարկված էին Սուրբ երկրում հայկական եկեղեցու իրավունքներն ու առավելությունները՝ երաշխավորելով դրա ամբողջականությունն ու անվտանգությունը:

Սբ. Հակոբ մենաստանի գլխավոր մուտքին նայող պատին արաբերենով փորագրված արձանագրություն կա, որը բառացի թարգմանությամբ, զգուշացնում է բոլոր զավթիչներին. «Մեր տեր Սուլթանի և արքա Ալ-Դահեր Սայիդ Մոհամեդի այս հրամանագիրը անիծում է բոլոր նրանց և նրանց հետագա սերունդներին, թող ամենակարող Աստված անիծի բոլոր նրանց, ովքեր վնաս կհասցնեն սրբավայրերին: Այսպիսով երաշխավորում էր Սբ. Հակոբ հայկական մենաստանի անվտանգությունը: Այս հրամանագիրը օգնել է պահպանելու պատրիարքարանի ամբողջականությունը:

Հետագա դարերում այդ իրավունքը վավերացվում է այլ հրամանագրերով:

Երուսաղեմի թագավորության հետ հայերի բազմաբնույթ շփումներն էլ ավելի են աշխուժանում Կիլիկիայի թագավորության շրջանում. ընդարձակվում են տարածքները, ավելանում է Երուսաղեմի հայկական տարրը:

Հայապատկան սրբավայրերի իրավունքների երաշխավորման հարցում վերջնական և ամենակարևոր գրավականը եղավ թուրք սուլթան Աբդուլ Մաջիդ 1-ինի 1852-ի գրավոր հայտարարությունը, որը պաշտոնապես հաստատեց ստատուս քվոյի սկզբունքը՝ այդպիսով հայկական եկեղեցու իրավունքները հավասարեցնելով կաթոլիկ և հունական ուղղափառ եկեղեցիներին՝ չնայած դրա համեմատաբար փոքր չափին:

Ստատուս քվոյի արդյունքում հաստատվեց սրբավայրերի հսկիչների՝ «կավասների» ինստիտուտը: Լինելով ոչ քրիստոնյա՝ նրանք կարող էին անաչառ հսկել ցանկացած սրբավայր, այդպիսով չեզոքացնելով երեք խոշոր քրիստոնյա ազգերի միջև մրցակցությունը այս կամ այն սրբավայրին տիրելու հրացում: Դարեր ի վեր այս գործառույթները փոխանցվել են հորից որդուն: Կավասները, ովքեր պաշտպանում էին հայոց պատրիարքին, հարյուրամյակների ընթացքում այնքան են մտերմանում հայոց պատրիարքարանի հետ, որ նրանց հաջորդող սերունդները սովորում են հայերեն և վարժ տիրապետում են մեր լեզվին:

Հետագա տասնամյակների ընթացքում Երուսաղեմի հայ համայնքը շարունակում էր աճել և բարգավաճել: Ամենաակտիվ շրջանում հայերի քանակը Երուսաղեմում կազմում էր 25000 մարդ: Առևտրականներն ու վաճառականները իրենց եկամուտներից շռայլորեն բաժին էին հանում եկեղեցուն՝ նվիրաբերելով տարածքներ և աջակցելով նոր եկեղեցիների ու իջևանատների կառուցմանը:

(շարունակելի)

*Ըստ ինտերնետային կայքերի*

---

**17Ͽ**

քննարկումները:

Ու եթե արևմուտքում արդեն գիտակցում են դրա անհրաժեշտությունը, ապա մեզանում այդ մշակույթը միայն նոր-նոր է արմատներ գցում:

**Ովքե՞ր կարող են հրավիրվել ճամբար եւ ի՞նչ հարցեր են ներկայացվում մասնակիցներին:**

Գաղափարներ ներկայացրած մարդիկ, ինչպես նաև դիզայներներ, ծրագրավորողներ, բիզնեսի և մարքետինգի մասնագետներ, սոցիալական խնդիրների գիտակներ, հրավիրվում են «Սոցիալական նորարարության եռօրյա ճամբար»:

Հրավիրվածները միավորվում են խմբերում և փորձում պատասխանել հետևյալ հարցերին.

**Ո՞րն է այն սոցալիական խնդիրը, որին իրենք արձագանքում են;**

**Ինչպե՞ս ստեղծել տեխնոլոգիա, որը կօգնի լուծել խնդիրը;**

**Ինչպե՞ս ապահովել գաղափարի կայունությունը;**

**Ինչպե՞ս հավաքագրել օգտատերերի համայնք՝ այս գաղափարի շուրջ;**

**Ի՞նչ են անելու «Սոցիալական Նորարարության ճամբարից» հետո:**

Մասնակիցներին իրենց խորհուրդներով ու դիտողություններով մեծապես օգնեցին սոցիալական մեդիափորձագետ Արփինե Գրիգորյանը, լրագրող, բլոգեր Արթուր Պապյանը, միջազգային փորձագետներ Դենիս Գարսկին, Գրիգորի Ասմոլովը, Նիկոլայ Յեբնոթերը և Ալեկսեյ Սիդորենկոն:

*Նյութը պատրաստեց՝ Սիլվա ԽԱՉԱՏՐՅԱՆԸ*

# Ինչպես փրկվեց Ռուսաստանը: Ստալինի առեղծվածի բացահայտումը...



Հեռուստատեսությամբ ցուցադրվում է պատմառուսուցողական հաղորդում: Հանրաճանաչ հեռուստահաղորդավար Սվանիձեն ջանադրաբար համոզում է հեռուստադիտողին, որ Ստալինի կողմից իրագործած ոճրագործությունները համամարդկային են: Պատմագետ Սվանիձեն լուրջ դեմքով ապացուցում է, «և ահա այս փաստաթուղթը ապացուցում է, որ Ստալինը նախապես պատրաստել էր ազգաբնակչության աքսորը և սպանդը» ասում է նա:

Սակայն այդ նույն ազգաբնակչությունը և հեռուստադիտողը ոչ վաղ անցյալում «Ռուսաստանի անունը» հաղորդման կազմակերպած ինտերակտիվ ընտրություններում Ռուսաստանի պատմական առաջին դեմք ընտրել էր Ստալինին: Պետրոս Առաջինի, Ալեքսանդր Նևսկու և այլ անունների մեջ հաղթել էր Ստալինը: Աղմուկ հանած սկանդալը չէր կարող անհետևանք մնալ: Հայտարարվում է, որ հաքերների կողմից կեղծվել են արդյունքները, և կազմակերպվում նոր ինտերակտիվ ընտրություններ, որտեղ ավելի քան հարյուր անունների մեջ Ստալինը գրավում է երրորդ տեղը: Զարմացած հաղորդավարները տարբեր բացատրություններ են փնտրում: Միթե ռուս ժողովուրդը ընտրում է իրեն ոչնչացնողին: Իսկ միգուցե այդ ժողովուրդը ինտուիտիվ ընտրել է իրեն փրկողի ն:

Ընդհանրապես, երբ լսում եմ ինչ որ ակնարկ, լինի դա պատմական թե գիտական, չեմ ընդունում որպես ճշմարտություն, այլ առաջանում են հարցեր: Նույն հարցերը ծագել էին Լույսաշխարհի մի շարք մասնակիցների մոտ Ստալինի այսպես ասած առեղծվածի շուրջ: Հենց այդ հարցերի ուսումնասիրությունը բերեց մի այնպիսի բացահայտման, որ մեր հայացքները ամբողջովին փոխվեցին: Իսկ ով էր Ստալինը իրականո ւմ:

Ստալինի կենսագրականի բոլոր վարկածներում բացակայում է մանկության և պատանեկության ժամանակաշրջանը: Չկա ոչ մի հավաստի ինֆորմացիա նրա հոր մասին, այսինքն Ստալինի ծագումը մինչև մեր բացահայտումը հայտնի չէր: Բոլոր այն վարկածները, որ ծագումով հայ է, հրեա է, և այլն հավաստի չեն և չեն ապացուցվում:

Ռուսական պատմության հեղափոխության և հետհեղափոխական ժամանակահատվածում շատ մութ և չբացահայտված անկյուններ կան: Այն բանից հետո, երբ Ռուսաստանի ակադեմիայի ակադեմիկներ Պոպովը, Միրոտկինը, Վիները և այլք, ինչպես նաև Ճապոնիայի գիտական ակադեմիայի ուսումնասիրությունները DNK-ի տվյալներով ապացուցեցին, որ 1998 թվականին մեծ շուքով հողին հանձնված ոսկորները Ռոմանովներինը չէին, այլ Ֆիլատովներինը: Եվ որ Վրաստանում բնակվող Նատալյա Բելիխոդձեն ոչ այլ ոք է, քան արքայադուստր Անաստասիան: Սրանից հետևում է, որ այն, ինչ կատարվել է հետհեղափոխական Ռուսաստանում, պետք է ունենա այլ տրամաբանություն: Իսկ Լենինի սպանությո ւնը, սա նույնպես առեղծված է, ո վ սպանեց և ինչո ւ: Ինչո ւ Սվանիձեն դրա մասին չի խոսում: Ինչո ւ էր Ստալինը հետապնդում Տրոցկուն, չէ որ նրա մտքերն էին սնում հեղափոխական շարժումը: Մի շարք ինչուների պատասխանը գտնելու համար պետք է փնտրել ինֆորմացիա այլ աղբյուրներից և ուսումնասիրել որոշ դետալներ, որոնք կարող են առաջին հայացքից կարևոր չթվալ:

Ստալինի մասին բազմաթիվ վավերագրական ֆիլմերի մեջ մատնանշվում է մի աննշան, սակայն շատ կարևոր փաստ, որը առիթ հանդիսացավ մեր բացահայտմանը: Չնայած լեհական աղբյուրները դա արդեն բացահայտել էին, սակայն մեզ մնում էր դա ապացուցել, որը մեզ հաջողվեց:

Ստալինը մինչ հեղափոխական շարժմանը միանալը ծառայել է կայսերական բանակում որպես սպա: Սրա մասին ասում են բոլոր աղբյուրները: Ահա այստեղ մի բայց կա: Բայց կայսերական բանակում ամեն մարդ չէր կարող ծառայել որպես սպա: Միայն ազնվական ծագումով հնարավոր էր ունենալ սպայական աստիճան կամ այն ստանալ անձամբ կայսրից: Այստեղ կդադարենք ձեզ տանջել և կներկայացնենք ձեզ մի սպայական ընտանիքի,

⊃21

## Բոմժերն աղբամանի մոտ



-Սովետի ժամանակ բանվոր էի, հետո դարձա վարպետ, ցեխի վարիչ, դիրեկտոր, մինիստր, հիմա բոմժ եմ:
-Սովետի ժամանակ բանվոր էի, հիմա բոմժ, **բա արժե՞ր էդքան տանջվել**:

## Օլիգարխի «ֆազերն էլ խփեցին»



-Այ համբալներ, ձեր քաշով մեկ փող եմ տալիս, որ թողեք **սուբոյ հայվան գլխիս ծրտի**:

## Երազախաբություն «հավայի» կղզիներում




-Էրեկ երազիս մեջ **Հավայան կղզիներում** ի՛նչ տժժալ էի տժժո ւմ:
-Ես էլ էս գիշեր **Կանարյան կղզիներն եմ** տժժացնելու:

***Կամթեց՝ Նիկոլայ ՄԱՆՈՒԿՅԱՆԸ (ՆԻԿՕ)***

# ՃՇՄԱՐԻՏ ԸՆԿԵՐՈՒԹՅՈՒՆՆ ԱՊՐԵՑՆՈՒՄ Է

Հայաստան Աշխարհում հայ գրատպության 500-ամյակի տարվա մայիսյան հաղթանակների ամիսն էր: Լոռվա ձորի վեհաշուք սարահարթին արժանապատվորեն բազմած, դարերի խորքից մեր օրերը հասած, Աստծո թագավորությանը՝ երկնքին անասելի մոտեցած, ամպերի գրկում ապրող երջանկահիշատակ Սուրբ Հովհան Օձնեցու նստավայր Օձունում տոն էր... Տոն նվիրված պայծառահիշատակ բժիշկ, պատվարժան պետական այր, լոռեցի բարերար մտավորական Համլետ Թամազյանին:

Աստվածահաճո այս տոնը Օձուն էին բերել մեծ լոռեցու՝ պրոֆեսոր Համլետ Թամազյանի մտերիմ ընկերները՝ «Հանուն Գուգարաց Աշխարհի» ԲՀԿ նախագահ, դոկտոր-պրոֆեսոր Վահրամ Բաղդասարյանը և ՀՀ Արմավիրի մարզպետ, գեներալ-մայոր Աշոտ Ղահրամանյանը՝ երևելի հայ բժշկի, պետական-հասարակական անվանի գործչի, պատվարժան մարդու, իրենց ընկերոջ պայծառ հիշատակը հավերժացնելու նպատակով:

Տոնի օրակարգը երջանկահիշատակ օձնեցի Համլետ Թամազյանի տուն տանող փողոցը ու Օձունի բուժամբուլատորիան վաստակաշատ պրոֆեսորի անունով անվանակոչելն էր և «Հ. Թամազյան» փողոցի դիմաց կառուցապատված պուրակում տեղադրված հուշարձանի բացումը:

Լոռեցի մեծ բժշկի կիսանդրին սիրով կերտել էր անվանի լոռեցի քանդակագործ Սարգիս Ղարիբյանը (Սևո), իսկ պուրակի կառուցապատման նախագիծը հեղինակել ճարտարապետ Արմեն Թադևոսյանը:

Հանդիսությունը վարող երիտասարդ արտիստ Իվան Անտոնյանը կիսանդրու բացման պատիվն ընձեռեց Համլետ Թամազյանի դստերն ու որդուն՝ Լուսինեին և Արթուրին, հարգանք հրավիրելով նաև քանդակագործ Սևոյին:

Այնուհետև ելույթ ունեցան Օձուն համայնքի ղեկավար Արսեն Տիտանյանը, ՀՀ Արմավիրի մարզպետ Աշոտ Ղահրամանյանը, «Լոռվա ձոր» հայրենակցական միության նախագահ, բ.գ.դ., պրոֆեսոր Սերգո Երիցյանը, ՎՊՄԻ-ի մանկավարժության ֆակուլտետի դեկան, բ.գ.դ., պրոֆեսոր Թերեզա Շահվերդյանը, «Միքայելյան վիրաբուժության ինստիտուտ» ՓԲԸ առաջին փոխտնօրեն Օնիկ Մելքոնյանը, «Հանուն Գուգարաց Աշխարհի» ԲՀԿ նախագահ, տնտեսագիտության դոկտոր, պրոֆեսոր Վահրամ Բաղդասարյանը:

Հանդիսության մասնակիցների բուռն ծափահարություններով գնահատված երկու ելույթ ունեցած անձանց խոսք հարկ եմ համարում ներկայացնել նաև ըն-թերցողիս գնահատանքին.

Արսեն ՏԻՏԱՆՅԱՆ. «Սիրելի հայրենակիցներ, հիշողությունն է այն կախարդական միջոցը, որով մարդկությունը հաղթել է մահին և այժմ, հավաքված բնության այս գողտրիկ անկյունում, մենք մեկ անգամ ևս փաստում ենք, որ Համլետ Թամազյան-մարդ-բժիշկ-քաղաքացին մեզ հետ է, ապրում է և արժանի է Օձունի զավակների շարքում անմահ լինելու, հավերժանալու...

Ասում ենք Համլետ Թամազյան և արևոտվում ենք, հուզմունքի ու ջերմության մի ալիք է անցնում մեր սրտերով և հիշում ենք հպարտորեն, շնորհակալությամբ:

Առաջին հերթին հպարտանում ենք, որ պատիվ ունենք պրոֆեսոր Թամազյանի համերկրացին ու նույն հողի զավակը լինելու համար: Հետո հիշում ենք այն սերը, որ նա տածում էր իր ծննդավայրի, իր հայրենակիցների հանդեպ:

Սուրբ Հովհան Օձնեցու օրհնաշատ սարահարթում է ծնվել Համլետ Թամազյանը, և աշխարհի տարբեր երկրներում, մեծ քաղաքներում լինելով՝ այստեղ է կառուցել իր երազանքների գողտրիկ տաճարը՝ իր սերունդներին ավանդելով անդավաճան մնալ սեփական արմատներին, հարազատ գյուղին ու պապենական օջախին: Նա երբեք անտարբեր չեղավ ո՛չ Օձունի, ո՛չ օձնեցու հանդեպ: Մեր հայրենակցի մասին բժշկական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր Գեորգի Օկրոն ասել է. «Համլետ Թամազյանը, ինչպես Հովհաննես Թումանյանը, չափազանց նվիրված է իր հայրենի Լոռուն և ջանք չի խնայում իր մասնագիտական գիտելիքները ծառայեցնելու իր ծննդավայրի բնակիչներին»:

Մեծերը չեն պարփակվում ժամանակի մեջ, մեծերը քայլում են կողք-կողքի՝ բոլոր ժամանակներում: Հենց այս ներքին կապով էր պատճառաբանված Համլետ Թամազյանի նախաձեռնողական և ֆինանսական օժանդակությունը Օձունի արժանավոր զավակներից մեկի՝ Հովհան Օձնեցու արձանի կառուցմանը:

Պե՞տք է արդյոք թվարկել, թե ինչեր է արել պրոֆեսոր Թամազյանը Օձունի համար, երբ բոլորս գիտենք, որ նա արել է ամենակարևորը՝ բուժել է, փրկել մարդկանց, երկարացրել նրանց կյանքը: Եվ այդ ամենը կատարել է անձնվիրաբար, բարձր պատասխանատվությամբ ու անշահախնդրությամբ՝ բոլոր իր կարիքը զգացող մարդկանց համար:

Իր կոչմանը հավատարիմ բժիշկ-վիրաբույժը նաև պետական գործիչ էր, հզոր անհատականութ-յուն՝ օժտված մարդկային գերագույն հատկանիշներով: Լավ ընկեր էր, լավ բարեկամ, լավ ամուսին, մտավորական ու քաղաքացի, լավ հայ: Իր կենդանության օրոք վայելեց գնահատված մարդուն հասանելիք պատիվն ու փառքը՝ արժանանալով պետական պարգևների և իրեն ճանաչող հազարավոր մարդկանց ջերմ սիրուն:

Այսօր հայրենի Օձուն է վերադարձել մեր հարգարժան ու սիրելի հայրենակիցը, վերադարձել է՝ այլևս այստեղ մեր կողքին, մեզ հետ ապրելու համար և իր երկրային կյանքն ավարտելուց հետո էլ նա շարունակում է իր առաքելությունը և իբրև ճշմարտության ու բարության սերմնացան-ուսուցիչ սերունդների համար մեզանում ամբարում հայոց գալիքի լույսը: Շնորհակալություն քեզ լույսով վերադարձող բարի, մեծ մարդ բոլոր երախտապարտներիս անունից:

Հայաստան Աշխարհի Օձունը զարդարող այս հուշարձանն էլ սերունդների համար է. «Դա մեռածներին պետք չէ, ես գիտեմ, բայց ապրողներին շատ է հարկավոր»»:

Օնիկ ՄԵԼՔՈՆՅԱՆ. «Սիրելի՛ լոռեցիներ, հարգարժա՛ն հյուրեր.

Այսօր մենք հավաքվել ենք մեր և ձեր սիրելի բժիշկ-պրոֆեսոր Համլետ Թամազյանի ծննդավայրում, նրա հիշատակը հավերժացնող փողոցի ու ամբուլատորիայի անվանակոչման և հուշարձանի բացման հանդիսավոր արարողությանը:

Համլետ Սերգեևիչի մասին կարելի է օրերով խոսել, բայց ես համառոտ կներկայացնեմ նրա գեղեցիկ կյանքի ուսումնական և ստեղծագործական ուղու առանձին դրվագներ, որոնց մի մասը անմիջական կապ ունի Լոռվա գեղեցիկ աշխարհի հետ:

Ծնվել է 1947 թ. մայիսի 1-ին Հայկական ԽՍՀ Թումանյանի շրջանի Օձուն գյուղում: 1966 թ. Երևանի Գրիբոյեդովի անվան միջնակարգ դպրոցն ավարտելուց հետո ընդունվել է Երևանի պետական բժշկական ինստիտուտի բուժական ֆակուլտետը և այն ավարտելուց հետո՝ 1972 թ., երբ ինքն արդեն տեսականորեն և գործնականորեն պատրաստված վիրաբույժ էր՝ Առողջապահության նախարարության ուղեգրով անցել է աշխատանքի Ալավերդի քաղաքի շրջանային կենտրոնական հիվանդանոցի վիրաբուժական բաժանմունքում որպես վիրաբույժ: Կարճ ժամանակ անց, երբ ակնհայտորեն դրսևորվեցին երիտասարդ վիրաբույժի ունակությունները, նա նշանակվեց Ախթալայի ավանային հիվանդանոցի նորաբաց վիրաբուժական բաժանմունքի վարիչ: Այդքան երիտասարդ տարիքում դրսևորել վիրաբույժի և առողջապահության կազմակերպչի նման հիանալի որակներ շատ քչերին է հաջողվում՝ միայն ընտրյալներին: Եվ պատահական չէ, որ Լոռվա աշխարհը ի դեմ Համլետ Թամազյանի գտավ իր անգերազանցելի բժիշկ-վիրաբույժին:

Դեռ ուսանողական տարիներին Համլետ Թամազյանը տարված էր վիրաբուժությամբ և հետաքրքրություն էր ցուցաբերում գիտական աշխատանքի նկատմամբ: Բնատուր ձիրքը, մեծ աշխատասիրությունը, գիտելիքների ծարավը և սերը վիրաբուժության նկատմամբ պայմանավորեցին նրա կայացումը, որպես վիրաբույժի, իսկ այնուհետև նաև առողջապահության համակարգի մեծ կազմակերպչի:

1973–1978 թթ. նա ղեկավարել է Ախթալայի ավանային հիվանդանոցի վիրաբուժական բաժանմունքը, և վստահորեն կարող եմ ասել, որ այդ տարիներին Ախթալայի ավանային հիվանդանոցում կատարվում էին այնպիսի բարդ վիրահատություններ, ինչպիսիք կատարվում էին Երևան քաղաքի առաջատար կլինիկաների վիրաբուժական բաժանմունքներում՝ մեր հանրապետության անվանի վիրաբույժների կողմից: Նրան հաջողվեց Թումանյանի շրջանի վիրաբուժական ծառայությունը հասցնել բարձր մակարդակի և իր ստեղծագործ աշխատանքի շնորհիվ վաստակեց Ալավերդու և մոտակա շրջանների ազգաբնակչութ-յան սերն ու հարգանքը, որի արդյունքը եղավ հետագայում Համլետ Թամազյանին «Ալավերդի քաղաքի պատվավոր քաղաքացի» կոչման շնորհումը, իսկ 2003 թ. Լոռվա ժողովուրդը ձայների զգալի մեծամասնությամբ իր սիրելի բժշկին ընտրեց Հայաստանի Հանրապետության Ազգային ժողովի 3-րդ գումարման պատգամավոր:

1983 թ. երիտասարդ, շնորհալի վիրաբույժին տեսնում և գնահատում է մեր ինստիտուտի հիմնադիր, Հայաստանում սրտային վիրաբուժության հիմնադիր, պրոֆեսոր Ալեքսանդր Միքայելյանը և հրավիրում իր ղեկավարած ԽՍՀՄ Բժշկական Գիտությունների համամիութենական Բժշկական Կենտրոնի Երևանյան մասնաճյուղի ընդհանուր վիրաբուժության

⊃21

20⊃

բա-ժանմունքը ղեկավարելու:

1986 թ. ակադեմիկոս Բորիս Պետրովսկու ղեկավարությամբ Համլետ Թամազյանը պաշտպանում է թեկնածուական, իսկ 1995 թ. ընդհանրացնելով վիրաբուժական գործունեության փորձը, հաջողությամբ պաշտպանում է դոկտորական թեզը:

Պրոֆեսոր Թամազյանի բնատուր տաղանդը որպես առողջապահության կազմակերպչի և վիրաբույժի փայլատակեց 1988 թ. Սպիտակի աղետալի երկրաշարժի ծանր օրերին, աղետից տուժվածների վիրաբուժական ծառայությունը ըստ արժանավույն կազմակերպելու ժամանակ, որի համար ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի հրամանագրով պարգևատրվել է «Պատվո նշան» շքանշանով և Պատվոգրով, իսկ Արցախյան պատերազմի ժամանակ վիրավոր ազատամարտիկների վիրաբուժական օգնությունը բարձր մակարդակով կազմակերպելու համար՝ Լեռնային Ղարաբաղի նախագահի հրամանագրով պարգևատրվել է Արցախի «Մարտական ծառայություն» մեդալով:

Հայաստանի Հանրապետության 18-րդ տարեդարձի առթիվ առողջապահության բնագավառում ներդրած հատուկ վաստակի համար՝ Հայաստանի Հանրապետության նախագահի հրամանագրով Համլետ Թամազյանը պարգևատրվել է «Մխիթար Հերացի» մեդալով:

Մարդուամենամեծերջանկությունըմյուսներին երջանկացնելն է: Եվ առաջնորդվելով այդ նշանաբանով՝ Համլետ Թամազյանը 1992 թ. հոկտեմբերին կոլեկտիվի խնդրանքով ստանձնեց քայքայման եզրին կանգնած մեր ինստիտուտի տնօրենի պարտականությունները և բառիս բուն իմաստով վերակենդանացրեց այն: Ինստիտուտն անմիջապես վերանվանվեց նրա հիմնադրի՝ պրոֆեսոր Ալեքսանդր Միքայելյանի անունով, բացվեցին 9 նոր վիրաբուժական բաժանմունք և ինստիտուտը փաստորեն դարձավ վիրաբուժության կենտրոն:

Վիրաբույժների նոր սերունդ պատրաստելու նպատակով Վիրաբուժության ինստիտուտում բացվեց հանրապետությունում իր նմանը չունեցող «Ապագա վիրաբույժների դպրոցը»՝ բժշկական համալսարանի IV-VI կուրսերի շնորհալի ուսանողների ընդգրկումով: 1994 թ. Համլետ Թամազյանը մրցույթով ընտրվեց ՀՀ Առողջապահության Ազգային ինստիտուտի Վիրաբուժական նեղ մասնագիտությունների ամբիոնի վարիչ: «Ապագա վիրաբույժների դպրոցի» սաները, ինչպես նաև ամբիոնում հետդիպլոմային կրթություն ստացած օրդինատորներից շատերն այսօր ղեկավարում կամ աշխատում են հանրապետության տարբեր կլինիկաների վիրաբուժական բաժանմունքներում:

Համլետ Թամազյանին հատուկ էր հավատարմությունը կյանքի ընտրած ուղուն և գեղեցիկի զգացողությունը: Իր անցած ճանապարհին նա կյանքի է կոչել շատ մարդկանց: Դժվար է չափել նրանց երախտագիտությունը: Բժշկական լայն հասարակությունը մեր մոտ, Սփյուռքում, հարևան հանրապետություններում միշտ բարձր են գնահատել նրա կազմակերպչական, գիտական և վերջապես մարդկային տաղանդը: Նրա նախաձեռնությամբ մեր ինստիտուտը համագործակցում է արտասահմանյան մի շարք առաջատար կլինիկաների հետ, իսկ Թբիլիսիի վիրաբույժների ընկերությունը պրոֆեսոր Համլետ Թամազյանին 1997 թ. պարգևատրեց Գ. Մուխաձեի անվան հուշամեդալով, Վրաստանի Գիտաբժշկական ընկերությունների նախագահությունը Զազա Պանասկերտելի Ցիցիշվիլու հուշամեդալով, իսկ Վրաստանի Բժշկական Գիտությունների Ակադեմիան նրան շնորհեց Ակադեմիայի իսկական անդամի կոչում:

Ավելորդ չեմ համարում նշել, որ Համլետ Սերգեևիչը շատ ուշադիր էր իր հայրենակիցների նկատմամբ և մեր ինստիտուտում բուժական ծառայություն ստացող Լոռվա ժողովուրդը հատուկ կարգավիճակ ունի, շուկայական հարաբերությունները շրջանցել են նրանց և մեր աշխատողների մոտ ընդունված է. եթե հիվանդը լոռեցի է, ապա մեր բարեկամն է:

Այսօր մենք հավաքվել ենք այստեղ և դիմում ենք Համլետ Թամազյանի հոգուն, ինչպես դիմել ենք իրեն երկար տարիներ:

Անմահ հոգի, անշու՜շտ, այժմ դու սավառնում ես այս աշխարհի երկնքում, իսկ այս հուշարձանը վկայությունն է քո նկատմամբ ունեցած մեր սիրո և հարգանքի, և այս թարմ ծաղիկների հետ, քո հուշարձանին ենք դնում մեր սիրո ու հարգանքի ջերմ զգացմունքները, որ համակված են քո շնչով ու հիշատակով»:

Հանդիսության վերջում ձայնը տրվեց մեծարված օծնեցի պրոֆեսորի դստերը՝ Լուսինեին, ով էլ երախտապարտ, սրտառուչ պոետիկ խոսքով շնորհակալություն հայտնեց սիրելի հայրիկի՝ Համլետ Թամազյանի հիշատակին այս Տոնը Օծնում բերած նրա ընկերներին և բոլոր ներկաներին:

Օրը պատմության գիրկն անցավ... մնաց հուշը... ապրեցնող ու կյանքի հավիտենականությունը ապահովող հիշողությունը... բարի գործը... և ճշմարիտ ընկերությունը...

*Գագիկ ԱԹԱԲԵԿՅԱՆ,*
*«Մաշտոց» հանդեսի գլխավոր խմբագիր*

*Լեւոն ԽԱՉԱՏՐՅԱՆ,*
*«Գործարար» ամսագրի Հայաստանի ներկայացուցիչ*

## Երեմեյ Գրիգորյանի «Անցյալի երգը» վեպը

THE
SONG
OF THE PAST
(Translated from Armenian by S. Grigoryan)
YEREMEY
GRIGORYAN

Այս տարի Ամերիկայի Միացյալ Նահանգներում լույս կտեսնի երիտասարդ գրող Երեմեյ Գրիգորյանի «Անցյալի երգը» վեպը: Վեպի հրատարակման իրավունքը ձեռք է բերել ամերիկյան աշխարհահռչակ Publish America հրատարակչությունը, որը վեպը հավանել է հեղինակի ներկայացնելուց հետո: «Անցյալի վեպը» թարգմանվել է անգլերեն Հայաստանում Սոնա Գրիգորյանի կողմից: Երեմեյ Գրիգորյանը առաջին հայազգի հեղինակն է, ում աշխատանքը հրատարակվելու է այդ հրատարակչության կողմից: Ինչպես նաև PublishAmerica հրատարակչության հետ կնքված պայմանագրի համաձայն վեպը ներկայացվելու է այլ երկրների հրատարակչություններին, մասնավորապես այս պահին բանակցություններ են ընթանում Կանադական Harlequin հրատարակչության հետ:

Այս պահին վաճառվում է վեպի էլեկտրոնային տարբերակը՝ http://www.publishamerica.net/product47884.html, իսկ գիրքը լույս կտեսնի մեկ ամսվա ընթացքում:

19⊃ *Ինչպես փրկվեց Ռուսաստանը: Ստալինի առեղծվածի բացահայտումը...*

խոստանալով ձեզ ավելի մանրամասն պատմել, թե ինչպես և ինչու, հետևելով պատմական փաստերին:

### Հայր և որդի Պրժևալսկիներ

Հետևեք իմանալու համար, թե ի՞նչ դեր էր խաղում Պրժևալսկին Ռուսաստանի համար, թե ինչպե՞ս էր Ստալինը բացահայտորեն պաշտում Պրժևալսկուն, ինչպե՞ս ծնվեց Ստալինը, ինչո՞ւ է նրա ազգանունը Ջուգաշվիլի, ինչպե՞ս էր Ստալինը լրտեսում, ինչպե՞ս Ստալինը փրկեց Լեհաստանը, ի՞նչ կապ կա Գուրջիևի, Ստալինի և Տիբեթի միջև: Ինչո՞ւ եկեղեցական սեմինարիան ավարտածը փակում էր Ռուսաստանում եկեղեցիները:

(շարունակելի)

*Տիգրան ՎԱՐԴԻԿՅԱՆ, Հովհաննես ՄԱՐԳԱՐՅԱՆ*

# ԹՈՒՄԱՆՅԱՆԱԿԱՆ ՕՐ ԳՅՈՒՄՐԻՈՒՄ

Թումանյանական օրը, որ Գյումրի էր բերել Լոռու մարզի «Մաշտոց» կրթամշակութային կենտրոնը՝ ի երախտագիտություն գյումրեցի Ղուկասյան եղբայրների թումանյանապաշտության և հայ մշակույթի գանձարան նրանց կատարած աստվածահաճո ու ազգաշահ ներդրման, կայացավ Գյումրու «Հոկտեմբեր» կինոթատրոնի դահլիճում: Գրական մշակութային այս հանդիսությունը իրենց ներկայությամբ պատվել էին Գյումրու քաղաքապետ Վարդան Ղուկասյանը, Հայաստանի գրողների միության նախագահ Լևոն Անանյանը, Գրականության ինստիտուտի տնօրեն Ավիկ Իսահակյանը, չարենցագետ, բանասիրական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր Դավիթ Գասպարյանը, անվանի գրողներ, մշակութի գործիչներ ու մտավորականներ:

Յուրօրինակ մշակութային տոնի հյուրերին ողջունեց Գյումրու քաղաքապետարանի մշակույթի բաժնի պետ Արտաշես Կարապետյանը:

Գյումրիում թումանյանական օրը բացեց «Մաշտոց» կրթամշակութային կենտրոնի խոսնակ, արտիստ Իվան Անտոնյանը՝ կատարելով Պարույր Սևակի «Անլռելի զանգակատան» Հովհաննես Թումանյանին նվիրված հատվածը:

**Հազար ութ հարյուր վաթսունինն թվին**
**Հայոց այգիներն ի՞նչ պտուղ տվին,**
**Հայոց արտերում ի՞նչ բերք էր հասել,-**
**Դժվար է ասել:**
**Սակայն այդ թվին Մայր Հայաստանի**
**Արգանդը եղավ սրբորեն բեղուն,**
**Մի մանուկ ծնվեց Լոռվա Դսեղում...**
**Նա հետո պիտի դառնա պատանի,**
**Եվ երիտասարդ, եւ այր իմաստուն,**
**Անբախտ Մարոյին լացով սպանի,**
**Մեր հառաչանքը հասցնի Աստծուն,**
**Մրմուռից դաղված նրա բերանով**
**Սարոյի նանը պիտի ողբ ասի,**
**Մսրա զորքի հետ Դավիթը խոսի,**
**Գիքորը կանչի. «էսպի՛ համեցեք...»:**
**Նա պիտի Երգի՝ ինչ է կամեցել**
**Իր մոխրակալած-հրակեզ հոգին**
**Եվ՝ որքան փրփուր-նույնքան կենսագին՝**
**Տարիներ հետո նա պիտի դառնա**
**Մի ժողովրդի ազնիվ կենսագիր...**

Այնուհետև խոսքը տրվեց Եղիշե Չարենցի անվան գրականության և արվեստի թանգարանի տնօրեն, գրող, հրապարակախոս, «Մաշտոց» հանդեսի գիտական խմբագիր, բանասիրական գիտությունների թեկնածու Կարո Վարդանյանին, ով ներկայացնելով օրվա խորհուրդը, կարևորեց Գյումրու քաղաքապետարանի մշակույթի բաժնի և «Մաշտոց» կրթամշակութային կենտրոնի օրինակելի համագործակցությունը Հայաստանում միջհամայնքային մշակութային կապերի, գրականության ու ազգային արվեստի զարգացման գործում: Գրականագետը երախտագիտությամբ «Մաշտոց» կըրթամշակութային կենտրոնի անունից շնորհակալություն հայտնեց Գյումրու քաղաքապետ Վարդան Ղուկասյանին՝ Ամենայն Հայոց Բանաստեղծ Հովհաննես Թումանյանի Թիֆլիսի բնակարանը գնելու և վիրահայ համայնքին ու հայ մտավորականությանը ընծայելու համար:

Գյումրիում թումանյանական օրվա կազմակերպիչներին ու գյումրեցիներին ողջունեց Հայաստանի գրողների միության նախագահ, ՀՀ մշակույթի վաստակավոր գործիչ Լևոն Անանյանը և հայ գրողական ընտանիքի երախտիքը հավաստեց Գյումրու թումանյանապաշտ պատվարժան ու պատվախնդիր Ղուկասյան եղբայրներին:



Բեմը տրամադրվեց Երևանի թատրոնի և կինոյի պետական ինստիտուտի Վանաձորի մասնաճյուղի տնօրեն, ՀՀ ժողովրդական արտիստ, պրոֆեսոր Հակոբ Ազիզյանին, ով հանդիսատեսին բարձրարվեստ կատարումով ներկայացրեց Հովհաննես Թումանյանի «Լոռեցի Սաքոն» պոեմը:

Բեմ բարձրացավ 1968-72 թվականներին Լենինականի մանկավարժական ինստիտուտի ուսանողական գրական ստուդիայի նախագահը հանդիսացած, Հայաստանի ժուռնալիստների միության վարչության և «Մաշտոց» ՀԿ նախագահության անդամ, պրոֆեսոր Ֆահրադ Ափուջանյանը, ով պատմեց իր հուշերից, տասնամյակներ առաջ Գյումրու գրական մշակութային կյանքի և Դսեղում Հովհաննես Թումանյանի հարյուրամյակի տոնակատարության մասին և խոսքն ավարտեց մեծ գյումրեցու՝ Հովհաննես Շիրազի հետևյալ տողերով.

**Լոռիդ ուներ բարձր սարեր,**
**Բայց ձյունագահ մի լեռ չուներ,**
**Որ աշխարհին ամեն կողմից երեւար,**
**Քեզ ստեղծեց անմահ ու մեծ,**
**Եվ աշխարհին, սար ու ձորին,**
**Ամպ ու հողմին ամեն կողմից երեւաց...**
**Ես քո Սիսը, դու իմ Մասիսն ազատված:**

Գյումրիում թումանյանական օրվա առթիվ բեմ ելավ Լենինականի մանկավարժականի ևս մի շրջանավարտ՝ ծնունդով Ջավախքից, Լոռում կայացած դպրոցի տնօրեն, Հայաստանի վիրահայերի միության Վանաձորի բաժանմունքի նախագահ Խորեն Փնջոյանը, ով էլ վիրահայերի անունից շնորհակալություն հայտնեց թումանյանապաշտ հայորդի Վարդան Ղուկասյանին:

Հայաստանի թատերական գործիչների միության Լոռու բաժանմունքի քարտուղար Էլֆիք Զոհրաբյանն էլ հանդիսատեսին պատկերավոր ներկայացրեց Մեծ Լոռեցու «Մի կաթիլ մեղրը»:

«Ա՜խ ինչ լավ է սարի վրա» թումանյանական երգի կատարումով մշակութասեր հանդիսատեսին հիացրեց Վանաձորի կամերային երգչախմբի (գեղարվեստական ղեկավար Ռուզաննա Մխիթարյան) մենակատար՝ Սամվել Գրիգորյանը:

Ամենայն հայոց բանաստեղծի հասարակական-քաղաքական գործունեության վերաբերյալ խոսեց ՀՀ Հանրային խորհրդի, կրթության, գիտության, մշակույթի ու երիտասարդության հարցերի հանձնաժողովի անդամ, Վանաձորի «Թռիչք» հասարակական կազմակերպության նախագահ, դրամատուրգ Հովհաննես Նիկողոսյանը:

Բեմը տրամադրվեց «Հորովել» երգիպարի պետական համույթի վաստակաշատ մենակատար, միջազգային ու հանրապետական փառատոնների դափնեկիր Ռոբերտ Մխիթարյանին:

Հանդիսավարը հրապարակեց «Թումանյանի ընտանեկան աշխարհը» գրքի հեղինակ՝ «Մաշտոց» հասարակական կազմակերպության նախագահության անդամ, ճարտարապետության դոկտոր, պրոֆեսոր, Հայաստանի ճարտարագիտական ակադեմիայի թղթակից անդամ Գառնիկ Շախկյանի ընծայագրությունը. «Երախտագիտությամբ և սիրով նվիրում եմ իմ հայրենի Վանաձորին եղբայրակից՝ Գյումրի քաղաքի արժանավորագույն քաղաքապետ Վարդան Ղուկասյանին՝ Մեծն Թումանյանի կյանքն ու գործն ապրեցնող հայորդուն», և հեղինակի կողմից ընծայագրված գիրքն Իվան Անտոնյանը նվիրեց պատվարժան քաղաքապետին:

Այնուհետև հանդիսավարը հրապարակեց Մեծն Թումանյանի ծննդավայր Դսեղի ավագանու որոշումը. «Հաշվի առնելով գյումրեցի Ղուկասյան եղբայրների մշակութապաշտ ու ազգանվեր ներդրումը՝ հայ մտավորականության «Վերնատունը» գնելու և որպես Թումանյանական մշակութային կենտրոն վիրահայ համայնքին նվիրաբե-

# ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ՄԵՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԸ

## Երեմեյ ԳՐԻԳՈՐՅԱՆ

***

Ամեն ինչ կյանքում իր գինն ունի,
Ամեն մի ավարտ իր սկիզբն ունի,
Ամեն մի գիշեր իր ցերեկն ունի,
Ամեն մի բաժանում իր հանդիպումն ունի,
Ամեն մի սուտ իր ճշմարտությունն ունի,
Ամեն մի երազ իր իրականությունն ունի,
Ամեն մի աղքատ իր գանձն ունի,
Ամեն մի հեքիաթ իր լինելն ունի,
Ամեն մի արցունք իր ծիծաղն ունի,
Ամեն մի ծիծաղ իր թախիծն ունի,
Ամեն մի անդարդ իր դարդն ունի,,
Ամեն մի քայլ իր ուղին ունի,
Ամեն մի անցյալ իր ապագան ունի,
Ամեն մի սեր իր սիրտն ունի,
Լոկ իմ սիրտն է, որ էլ սեր չունի,
Ամեն մի սխալ իր գղջանքն ունի…
Ցավոտ է այնքան լռությունը քո,
Անցյալիս հուշերի նման խճճված,
Անչափելի կարոտը հոգուս
Զգացնել է տալիս,որ դու չկաս:

***

Դու դարձար լոկ հուշերիս ծնունդ
Որ ժառանգեցի քեզնից արցունքով,
Այն ամեն տեղ, ամեն անկյունում
Օրն է իմ միշտ սևով մթնեցնում:

Ես մի մրրիկ եմ աքսորված բախտից,
Կորցրած խենթ սիրո փնտրտունքներով,
Մեկնում եմ ձեռքս, բայց դարձյալ նորից
Լոկ օտարներն են ժպտում ինձ հեռվից:

Երբ կդադարեն սրտերը սիրել,
Գուցե այդ պահին մենք դարձի կգանք
Կհասկանանք,որ այս կյանքում իրեղեն
Միայն վերքը չէր մեզ կապում իրար:

Ու ժամանակը էլ չի անցնի իզուր
Վայրկյաններն էլ դարեր չեն թվա
Մենք կվերադարձնենք հուշերը բոլոր,
Որ հասցրինք ծնել իրար չսիրած:

***

Միրտս սրտիդ, գեթ մի վայրկյան
Կարոտ կտա կհեռանա,
Աչքս աչքիդ գեթ մի վայրկյան
Արցունք կտա կմոռանա:

Շուրթս շուրթիդ գեթ վայրկյան
Համբույր կտա կհեռանա,
Միտքս մտքիդ գեթ մի վայրկյան
Խորհել կտա կմոռանա:

Ձեռքս ձեռքիդ գեթ մի վայրկյան
Դող կտա կհեռանա,
Կանչս կանչիդ գետ մի վայրկյան
Կարձագանքի կմոռանա:

Արևը վառ գեթ մի վայրկյան
Կարծես ժպտաց ու հեռացավ,
Ինչպես սերդ գեթ մի վայրկյան
Ինձ պարուրեց ու մոռացավ:

## Սամվել ԱՎԴԱԼՅԱՆ

### Սոնետ 001

Գարնանային քամու նման ջերմաշունչ
Ու հմայված հոգու նման անհամբեր
Դու քայլեցիր, սակայն, ավա՜ղ, լուռ ու մունջ,
Խելառ սիրուս ու աշխարհիս անտարբեր:

Սրտիս թվաց, թե ընկերն եմ ցանկալի,
Ու կանչեցի ոգի առած, թևավոր,
Ձայնս, սակայն, արձագանքն էր անցյալի,
Բախտակիցս՝ ընկուզենին մենավոր:

Կանչս մարեց անլուր կյանքի հորձանքում,
Ողջ աշխարհը դարձավ վարար մի սև գետ,
Ու լողացի ամենակուլ տարերքում,
Կռիվ տալով անագորույն բախտիս հետ:

*15 օգոստոսի, 2008 թվական*

Ո՞ւր է քարը, հայրենիքից իմ բերած,
Որ հենարան դառնա հոգնած իմ ուսին,
Որ բա՜րձ դառնա գլխիս, վշտից ճերմակած,
Որ հիմք դառնա արդեն փլվող իմ հույսին:

Որ խոչընդոտ ճամփիս դառնա ուղեցույց,
Որ տո՜ւն դառնամ թեկուզ մտքով, անմարմին,
Հենվեմ նրան ու արտասվեմ անթաքույց,
Որ խաչ դառնա անաստվածիս շիրիմին:

### 1995

Կանգնած էի կյանքի գետի եզերքին,
Լողում էին դեմքերն անթիվ իմ կողքով,
Ոմանք հլու, ոմանք ընդդեմ տարերքին,
Ոմանք հպարտ, ոմանք՝ խոնարհ հայացքով:

### Ինքնաբնութագիր

Այս աշխարհում հետին մարդը չե՛մ լինի,
Թռչողներին թևեր կոտրող չե՛մ լինի,
Սողունների հրեշտա՛կն եմ ես մահվան,
Թողություն ու գութ մուրացող չե՛մ լինի:

Ես իմ խոսքը գործ դարձրի, գործս՝ մի գիրք-հուշարձան,
Կյանքս՝ հատիկ ցորեն հացի, ազգիս ձեռին սերմնացան:

## ՀԱՅԵՐԵՆԻՆ ՈՒԿՐԱԻՆԱՅԻ ՏԱՐԱԾԱՇՐՋԱՆԱՅԻՆ ԼԵԶՎԻ ԿԱՐԳԱՎԻՃԱԿ Է ՏՐՎԵԼ

Ուկրաինայի նախագահ Վիկտոր Յանուկովիչն օգոստոսի 8-ին ստորագրել է «Պետական լեզվական քաղաքականության հիմունքների մասին» օրենքը:

Գերագույն ռադան լեզվի մասին օրենքն ընդունել էր հուլիսի 3-ին, ինչը բողոքի ալիք էր բարձրացրել երկրում: Շատերը դեմ են, որպեսզի երկրի տարածքում տարածաշրջանային կարգավիճակ տրվի ռուսերենին:

«Պետական լեզվական քաղաքականության հիմունքների մասին» օրենքով պահպանվել է ուկրաիներենի պետական կարգավիճակը, իսկ տարածաշրջանային լեզվի կարգավիճակ է տրվել հայերենին, ռուսերենին, բելառուսերենին, բուլղարերենին, մոլդովերենին, գերմաներենին, լեհերենին, ռումիներենին, ևս 10-ը լեզվի: Այժմ հայերենը կարելի է պետականին հավասար գործածել Ուկրաինայի բոլոր այն շրջաններում, որտեղ այն համարվում է բնակչության 10 տոկոսի մայրենի լեզուն:

րելու փաստը՝ Գյումրու քաղաքապետ, նվիրյալ հայորդի Վարդան Նիկոլայի Ղուկասյանին շնորհել «Պատվավոր Դսեղցի» կոչում»:

Բեմ հրավիրվեց Լոռու մարզի Դսեղ համայնքի ղեկավար Գառնիկ Հովսեփյանը, ով էլ ծափողջույնների ներքո բարեպաշտ շնորհառուին հանձնեց Դսեղ համայնքի ավագանու կայացրած որոշման արձանագրությունը՝ «Պատվավոր Դսեղցի» կոչում շնորհելու վերաբերյալ:

Թումանյանապաշտ մեկենասին արժանվույնս գնահատել ու վերաբերվել էր նաև Լոռու մարզի «Մաշտոց» կրթամշակութային կենտրոն հասարակական կազմակերպության նախագահությունը, որի 06.06.2012 թ. կայացրած որոշումը հրապարակեց կենտրոնի խոսնակը. «Երախտագիտությամբ կարևորելով ու ողջունելով թումանյանական «Վերնատունը» որպես հայկական մշակութային կենտրոն վերահայությանն ու հայ մտավորականությանը ընծայելու ազգաշահ ու աստվածահաճո առաքելությունը՝ Գյումրու քաղաքապետ Վարդան Նիկոլայի Ղուկասյանին ընծայել քանդակագործ Արամ Մարգարյանի (Ադո) «ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ ԲԱՆԱՍՏԵՂԾԸ» ստեղծագործությունը: ՀԿ նախագահ՝ Գագիկ Աթաբեկյան, պատասխանատու քարտուղար՝ Արամ Մարգարյան»:

Թումանյանական օրվա մշակութալույս բեմում պատվանդանին բազմած «Ամենայն Հայոց Բանաստեղծը» ստեղծագործությունը գյումրեցի բարեպաշտ մեկենասին ընծայելու պատիվը վերապահված էր «Մաշտոց» կազմակերպության հիմնադիր նախագահ, հանդեսի գլխավոր խմբագիր Գագիկ Աթաբեկյանին, ով էլ սիրով ի կատար ածեց «Մաշտոց» ՀԿ նախագահության որոշումը:

Մշակութալույս օրվա խորհուրդն ամփոփեց թումանյանապաշտ մեկենաս Վարդան Ղուկասյանը, ում շնորհակալական խոսքը համեմվեց ևս մի բարեսեր առաքելություն ստանձնելու հավաստիացումով՝ Ղուկասյան եղբայրները կհոգան նաև Թիֆլիսի այլևս հայ ժողովրդին պատկանող թումանյանական տան հիմնանորոգման ու վերակառուցման ծախսերը:

**Լևոն ԽԱՉԱՏՐՅԱՆ**

# ԱԿԱՆԱՎՈՐ ԶՈՐԱՀՐԱՄԱՆԱՏԱՐԸ, ՊԵՏԱԿԱՆ ԳՈՐԾԻՉԸ

## Կոմս Միքայել Տարիելի Լոռիս-Մելիքով

1888 թվականի դեկտեմբերի 22-ին Ֆրանսիայի Նիցցա քաղաքում մահկանացուն կնքեց կոմս Միքայել Տարիելի Լոռիս-Մելիքովը: Ընկերները նրա դին տեղափոխեցին հանգուցյալի ծննդավայր՝ Թիֆլիս, և ամփոփեցին սուրբ Գևորգ եկեղեցու բակում:

Ո՞վ էր Միքայել Լոռիս-Մելիքովը, ում այդպիսի մեծ պատվի արժանացրին ընկերները, թիֆլիսահայությունը, հայոց եկեղեցին:

Լոռիս-Մելիքովների տոհմը հայտնի դարձավ XVII դարից, երբ նրանց նախահայր մելիք Նազարն իր ծառայությունների համար 1603 թ. Իրանի շահ Աբաս I-ից նվեր ստացավ Լոռի բերդաքաղաքն իր շրջակայքով: Աբաս I-ի կողմից հաստատվեց նաև նրա մելիքական իրավունքը:

Հետագայում Նազար Լոռիս-Մելիքովը ծառայության անցավ վրաց թագավոր Լուարսաբի մոտ: Այդ ժամանակից էլ Թիֆլիսում հաստատվեց նաև Նազարի ընտանիքը: Այստեղ առևտրական բավականին հաջող գործունեություն ծավալեց Նազարի որդին՝ Տարիելը: Նա առևտրական ներկայացուցչություն ուներ Գերմանիայի Լայպցիգ քաղաքում և եվրոպայից արդյունաբերական ապրանքներ էր ներկրում Թիֆլիս և Ռուսաստան: Վրաստանը Ռուսաստանին միանալուց հետո (1783 թ.) Լոռիս-Մելիքովներն անցել են ռուսական ծառայության և 1832 թ. հաստատվել որպես ռուսական ազնվականներ:

Լոռիս-Մելիքովների տոհմը ի սկզբանե կոչվել է Քալանթարյան: Այդ ազգանունը տոհմը պահպանում է մինչև այժմ՝ Լոռու մարզի Արդվի գյուղում:

Լոռիս-Մելիքովների տոհմի ամենանշանավոր ներկայացուցիչը կոմս Միքայել Տարիելի Լոռիս-Մելիքովն է (1825, Թիֆլիս, 1888, Նիցցա):

Ուսյալ և կրթությունը պաշտող հոր նախաձեռնությամբ ու ջանքերով տասներկուամյա Միքայելը 1837 թ. ընդունվում է Մոսկվայի Լազարյան ճեմարան: Այստեղ ուսանելու տարիներին ի հայտ են գալիս ապագա իշխանավորի ծիրքերը՝ աշխատասիրություն, նպատակասլացություն և անհողդողդ կամք: Ճեմարանում նա ցուցաբերում է գերազանց առաջադիմություն. կատարելապես էր տիրապետում հայերենին, վրացերենին, ռուսերենին, թուրքերենին, գերմաներենին և ֆրանսերենին: Նաև արվեստների սիրահար էր: Հատկապես մեծ սեր ուներ պոեզիայի նկատմամբ. ուսանողական տարիներին նրա անբաժան ընկերն էր արդեն իսկ հայտնի բանաստեղծ Նիկոլայ Ալեքսեևիչ Նեկրասովը:

Միքայելը նաև ըմբոստ բնավորություն ուներ, որի պատճառով էլ հեռացվեց ճեմարանից: Դա նրան ստիպեց 1842 թ.ից ուսումը շարունակել հեծելազորի յունկերների դպրոցում (Պետերբուրգ): Դպրոցն ավարտելուց հետո ծառայության է անցնում Հուսարական գնդում, իսկ 1847 թ. տեղափոխվում Կովկաս՝ դառնալով Շամիլի ղեկավարած լեռնականների դեմ կռվող Կովկասյան հատուկ կորպուսի հրամանատար կոմս Մ. Ս. Վորոնցովի համհարզը: Ռազմական գործողությունների ժամանակ նրան հաջողվում է ամբողջությամբ լիկվիդացնել



Հաջի Մուրադի և Մուհամեդ Ամինի զինյալ խմբերը: Կոմս Մ. Վորոնցովը այդ ժամանակ է, որ նրան բնորոշեց որպես «արժանավոր ու շատ խելացի սպա»: Նրան շնորհվեց փոխգնդապետի կոչում:

Ի դեպ, Լև Նիկոլաևիչ Տոլստոյի «Հաջի Մուրադ» վիպակում շատ էջեր են նվիրված հայ մեծ զորավարի այդ օրերի սխրանքին: Ինքը՝ Միքայել Լոռիս-Մելիքովը, Վորոնցովի առաջարկով, այդ օրերին գրառել է Հաջի Մուրադի լեգենդը՝ «Նոթեր Հաջի Մուրադի մասին», որը 1881 թ. հրատարակվել է **«Русская старина»** ամսագրում:

Այսպես է սկսվում Միքայել Լոռիս-Մելիքովի զինվորական կարիերայի սրընթաց վերելքը: Նա առանձնապես աչքի է ընկնում Ղրիմի պատերազմի ժամանակ (1853-1856): Որպես առաջատար հեծյալ ջոկատի հրամանատար ծառայելով Բ. Բեհբությանցի ղեկավարած Կովկասյան կորպուսում՝ նա հաղթական ճակատամարտեր է տալիս Կարաչախի, Բայանդուրի, Ալեքսանդրապոլի, Արգինի և Կարսի մատույցներում:

Առաջին ճակատամարտում (1853 թ., սեպտեմբերի 13), որը տեղի է ունեցել Արփաչայի աջ ափին՝ Կարաչախի, այնուհետև՝ Բայանդուրի կամրջի մոտ, Լոռիս-Մելիքովի 30 քաջերին հաջողվում է ոչնչացնել թուրքական բանակի գլխավոր ջոկատը: Այդ սխրանքի և 1854 թ. դեկտեմբերի 20-ին Արգինի մոտ տեղի ունեցած ճակատամարտում ունեցած հաջողությունների համար Լոռիս-Մելիքովն արժանանում է գնդապետի կոչման, իսկ Արգինի ճակատամարտն ստանում է «Գնդապետ Լոռիս-Մելիքովի անվեհեր խիզախության գործը» անվանումը: Այդ օրերին է, որ նա ծանոթանում է հայազգի մեկ այլ զորավարի՝ Մովսես Արղության հետ: Այդ ծանոթությունը հետագայում վերածում է երկու նշանավոր իշխանական տոհմերի բարեկամության. Միքայելը դառնում է Մ. Արղությանի փեսան:

1860-73 թթ.-ին Լոռիս-Մելիքովը եղել է Հարավային Դաղստանի պետ և Դերբենդի քաղաքապետ, Թերեքի մարզպետ: Թերեքի մարզպետ Լոռիս-Մելիքովի աշխատանքի լավագույն գնահատականը տվել է Կովկասի փոխարքա Ալեքսանդր Մորավյովը. «Թերեքը մեկն է, Լոռիս-Մելիքովը՝ մեկը: Ուռա՛»:

1877-1878 թթ. ռուս-թուրքական պատերազմի ժամանակ Լոռիս-Մելիքովը նշանակվում է Կովկասյան առանձին կորպուսի հրամանատար: Գլխավորում է Արդահանի գրոհը և գրավումը, Ալաջայի բարձունքներում Մուխթար փաշայի զորախմբի ջախջախումը, Կարսի գրավումը: Պատերազմի ավարտից հետո ստանում է գեներալ-մայոր կոչում և կոմսի տիտղոս:

1840-70-ական թվականներին, ընդհանուր առմամբ, Միքայել Լոռիս-Մելիքովը մասնակցել է 180 ճակատամարտի, որոնցում աչքի է ընկել քաջությամբ, մեծամասշտաբ ռազմական գործողությունների ղեկավարման արվեստով, որի համար արժանացել է ոչ միայն զինակիցների, այլև ցարի մեծագույն ուշադրությանը: Եվ պարգևները թափվել են նրա գլխին ինչպես առատության եղջյուրից. Սուրբ Ալեքսանդր Նևսկու շքանշան (1869), Սուրբ մեծ իշխան Ալեքսանդր Նևսկու ադամանդազարդ շքանշան (1871), Սուրբ Գեորգիի 3-րդ (1877), 2-րդ (1877) աստիճանի շքանշաններ, Սուրբ Վլադիմիրի 4-րդ (1854), 3-րդ (1855), 2-րդ (1864), 1-ին (1877) աստիճանի շքանշաններ, Սուրբ Աննայի 4-րդ (1848), 3-րդ (1850), 2-րդ (1852), 1-ին (1860) աստիճանի շքանշաններ, Սուրբ Ստանիսլավի 1-ին աստիճանի շքանշան (1859), պարսկական Առյուծի և Արծվի 2-րդ աստիճանի շքանշան (1864), «Խիզախության համար» ոսկե սուսեր (1854), Ոսկե զենք (1862), Կովկասի գրավման համար խաչ (1864): Հետաքրքիր է. Լոռիս-Մելիքովը պարգևատրվել է նաև թուրքական մեջլիսի շքանշանով (1856): Դրանով թուրքական մեջլիսը և Կարսի մուսուլման ազգաբնակչությունը իրենց շնորհակալությունն են հայտնել Լոռիս-Մելիքովին՝ Կարսի ճակատամարտի ժամանակ թուրք ազգաբնակչության նկատմամբ նրա ցուցաբերած «մարդասիրության, իր պարտականությունների գերազանց իմացության և ճշգրիտ իրականացման, բացառիկ արդարության համար»:

Կարսի գրավումից հետո (1877 թ.) Միքայել Լոռիս-Մելիքովի առողջությունը կտրուկ վատանում է. տանջում էր անտանելի հազը: Եվ նա դիմում է բանակի գլխավոր հրամանատար Միխայիլ Ռոմանովին՝ խնդրելով արձակուրդ՝ բուժվելու նպատակով: Այդ արձակուրդը, սակայն, Լոռիս-Մելիքովի համար դառնում է բեկումնային, նոր գործունեության՝ պետական պաշտոնավարման

24Չ

սկիզբ: 1879-ին նա նշանակվում է Աստրախանի, Սարատովի, Սամարայի և Խարկովի ժամանակավոր գեներալ-նահանգապետ: Այս պաշտոնում նրան մեծ փորձություն էր սպասվում` մոլեգնող ժանտախտը: Լոռիս-Մելիքովը պայքար սկսեց համաճարակի դեմ, և երկու ամիս անց ժանտախտը նահանջեց: Կոմսն օգտագործեց արքունիքի կողմից այդ նպատակով հատկացված միջոցների միայն 10 տոկոսը, իսկ մնացածը վերադարձրեց գանձարան:

Շուտով նա նշանակվում է Խարկովի գեներալ-նահանգապետ և տեղի զորքերի հրամանատար: Այդ ժամանակ Խարկովում տիրում էր լարված մթնոլորտ. հեղափոխական շարժումները գագաթնակետին էին հասել: Լոռիս-Մելիքովը չի շտապում բռնություն գործադրել, այլ ուսումնասիրում է իրավիճակը և խաղաղ ճանապարհով հասնում խռովության ճնշմանը: Այդ մասին ընդարձակ հոդված է տպագրվում նաև բրիտանական «Թայմս» թերթում: Թղթակիցը դրվատում է կոմսին` ընդգծելով նրա աննախադեպ խաղաղ վարչարարությունը:

Ռուսաստանում, սակայն, ընդհանուր առմամբ, ներքին իրավիճակը մնում էր ծայրահեղ սրված: Ստեղծված իրավիճակը շտկելու և նարոդնիկների հուզումներին վերջ դնելու նպատակով Ալեքսանդր Երկրորդ կայսրը 1880 թ. ստեղծում է Գերագույն կարգադրիչ հանձնաժողով` արտակարգ դիկտատորական լիազորություններով, և նախագահ է նշանակում կոմս Լոռիս-Մելիքովին: Կարճ ժամանակ անց Լոռիս-Մելիքովի նախաձեռնությամբ այդ հանձնաժողովը վերացվում է, իսկ ինքը նշանակվում է ներքին գործերի նախարար` դառնալով, փաստորեն, Ռուսաստանի վարչապետ-դիկտատոր: Նման արտակարգ լիազորություններ Ռուսաստանում ոչ ոք չի ունեցել. թերևս միայն Եկատերինա Երկրորդի ֆավորիտ Գրիգորի Ալեքսանդրովիչ Պոտյոմկինը: Այդ մասին կոմսը հետագայում ասել է իր մտերիմ ընկերոջը` իրավաբան, գրականագետ Ա. Կոնին. «Չագիվ էի հասցրել շուրջս նայել, խորհել, սովորել, երբ հանկարծ շրըխկ` գնա կառավարելու արդեն ամբողջ պետությունը: Ես սեփական հայեցողությամբ բարձրագույն հրամանատարներ արձակելու լիազորություն ունեի: Ոչ մի իշխան` ո'չ Մենշիկովը, ո'չ Արակչեևը, երբեք նման համընդգրկուն իշխանություն չեն ունեցել»:

Միքայել Լոռիս-Մելիքովը եռանդուն ձեռնամուխ է լինում իր նոր պարտականությունների կատարմանը: Հեղափոխականների դեմ պայքարը նա զուգակցում է լիբերալ միջոցառումներով. սկսում է բարեփոխումներից: Առաջին քայլով ասպարեզից հեռացնում է ժողովրդի ատելությանն արժանացած առանձին գործիչների, վերացնում է ոստիկանական III բաժանմունքը, որոշակի ազատություններ է շնորհում մամուլին, չեղյալ է հայտարարում շատ ծանր հարկեր, բարեփոխում է դատական համակարգը: Դրանով նա ջանում է դեպի իրեն գրավել հասարակության լիբերալ մասը: Եվ դա նրան հաջողվում է. երկրում իրականացված արմատական փոփոխությունները մեղմում են քաղաքական լարված իրավիճակը, ապահովում նրա նկատմամբ ժողովրդի վստահությունը:

Լոռիս-Մելիքովը գնաց ավելի հեռուն. մշակեց և Ալեքսանդր Երկրորդին ներկայացրեց տնտեսական և այլ բնույթի բարեփոխումների նախագիծ, որով մտցվում էր պարտադիր փրկագնում, իջեցվում էին փրկավճարները, վերացվում էր շնչահարկը, նախատեսվում էր գյուղացիների վերաբնակեցում խիտ բնակեցված նահանգներից, առաջադրվել էր նաև զեմստվոների նշանակության բարձրացման խնդիր: Ալեքսանդր Երկրորդը հավանություն է տալիս այդ նախագծին և հաստատում այն: Ալեքսանդր Երկրորդի սպանությունից հետո (1 մարտի 1881 թ.) Ալեքսանդր III կայսրը մերժում է Լոռիս-Մելիքովի բարեփոխումների ծրագիրը, և վերջինս, ստիպված, 1881 թ. մայիսի 7-ին հրաժարական է ներկայացնում, որն ընդունվում է: Հետագայում Ալեքսանդր III կայսրը այսպես է արտահայտվում Լոռիս-Մելիքովի բարեփոխումների ծրագրի մասին. «Փառք Աստծո, այդ հանցավոր ու հապճեպ քայլը` կապված սահմանադրության հետ, չկատարվեց, և այդ ամբողջ ֆանտաստիկ նախագիծը մերժվեց նախարարների խորհրդում»: Իսկ Լոռիս-Մելիքովի հակառակորդները նրա կառավարման շրջանը հեգնանքով անվանեցին «սրտի դիկտատուրա», իրեն` կոմսին, «թավշյա դիկտատոր»: Նրանք չգիտակցեցին, որ մերժելով Լոռիս-Մելիքովի բարեփոխումների ծրագիրը Ռուսաստանը հետ նետեցին մի քանի տասնամյակով:

Արդեն քայքայված առողջությամբ և հուսալքված` Միքայել Լոռիս-Մելիքովը հեռացավ երկրից և հաստատվեց Ֆրանսիայի Նիցցա քաղաքում: Այստեղ նա զբաղվեց գրական աշխատանքով: Նրա գրչին են պատկանում «Նոթեր Հաջի Մուրադի մասին» (գրվել է Ռուսաստանում), «Կովկասի կառավարիչների մասին. 1776 թ. մինչև XVIII դարի վերջը», «Կուբան գետի վրա նավագնացության մասին», «Երկտող Թերեք մարզի կառավարման մասին» և այլ երկեր:

Ռուսաստանի ռազմական և պետական խոշորագույն գործիչ Միքայել Տարիելի Լոռիս-Մելիքովի մասին հանրահայտ Բրոկհաուզի և Էֆրոնի հանրագիտարանային բառարանը գրում է. «Հազվագյուտ անշահախնդրության մարդ, սրամիտ և ուրախ զրուցակից, բոլորին մատչելի, բոլորի հետ սիրալիր Լոռիս-Մելիքովը համբերությամբ և ուշադրությամբ մինչև վերջ լսում էր առաջարկությունները, բայց, աչքի ընկնելով համբերությամբ այլոց կարծիքների նկատմամբ` նա անսասան էր մնում իր հիմնական համոզմունքներում»:

Եվ այդ «անսասան հիմնական համոզմունքներն» էին, որ նրան հասցրին ռուսական կայսրության կառավարման բուրգի բարձունքները և անմահացրին նրա անունը:

*Գագիկ ԱԹԱԲԵԿՅԱՆ,*
*«Մաշտոց» հանդեսի գլխավոր խմբագիր*

ԼՐԱՀՈՍ

# ԱՅՍ ՏԱՐԻ ՀԱՅԱՍՏԱՆԻՑ ՄԵԿՆՈՂՆԵՐՆ ԱՎԵԼԻ ՇԱՏ ԵՆ




Հայաստանի ԿԱ քաղաքացիական ավիացիայի գլխավոր վարչությունը տեղեկացնում է, որ նախորդ տարվա նույն ժամանակահատվածի համեմատ այս տարվա առաջին կիսամյակում մեկնող և ժամանող ուղևորների թվի ավելացում է նկատվել: Այս տարվա առաջին կիսամյակում օդային ճանապարհով Հայաստանից մեկնողների թիվը դարձյալ գերազանցել է ժամանողների թվին: Զվարթնոց օդանավակայանով Հայաստան է ժամանել 333 հազար 962, մեկնել 384 հազար 37 մարդ: Տարբերությունը կազմում է 50 հազար 75 մարդ:

Առաջին կիսամյակում Գյումրիի Շիրակ օդանավակայանով երկրից մեկնել է 18 հազար 811, ժամանել 12 հազար 967 մարդ:

Հիշեցնենք, որ 2011 թ. առաջին կիսամյակում օդանավակայանով Հայաստանից մեկնել էր 360 հազար 611, ժամանել 309 հազար 541 մարդ:



Լոնդոնում մեկնարկած 30-րդ ամառային օլիմպիական խաղերում հայաստանցի մարզիկները նվաճեցին մեկ արծաթե և երկու բրոնզե մեդալ: Հայաստանը, որ 6-րդ անգամ էր մասնակցում ամառային խաղերին, Լոնդոնում պետք է ներկայանար 25 մարզիկներով, սակայն վերջին պահին վնասվածք ստացավ ծանրորդ Տիգրան Մարտիրոսյանը, որին փոխարինելու իրավունք չունեինք, և մեր թիմը Լոնդոն մեկնեց 24 անդամով:

**Հռիփսիմե Խուրշուդյանը դարձավ Օլիմպիական խաղերի բրոնզե մեդալակիր, հունահռոմեական ոճի ըմբիշ Արսեն Ջուլֆալակյանը նվաճեց արծաթե մեդալ` Հայաստանին պարգևելով երկրորդ օլիմպիական մեդալը եւ հունահռոմեական ըմբշամարտի ներկայացուցիչ Արթուր Ալեքսանյանը հռչակվեց Օլիմպիական բրոնզե մեդալակիր:**

Հայ ծննդոյիստ **Արսեն Գալստյանը** առաջին ոսկե մեդալը պարգևեց Ռուսաստանի հավաքականին, իսկ բռնցքամարտիկ **Դավիթ Հայրապետյանը** նվաճեց բրոնզե մեդալ:

## *Սիրավան ՍԵՎՈՒՆԻ*

### ՔԱՄԻ

Անտեր քամին այս ե՞րբ պիտի
Խելքը գլուխն հավաքի,
Ինչ որ ճամփին ձեռքը ընկնի.
Կողքով անցնի, չքանդի:

Խաթարված է չափը նրա
Բարքերի պես նորօրյա,
Թե որ կյանքը այսպես գնա,
Մարդուն էլ ի նչ կմնա:
6 մարտի, 2012 թ.

### ՄԱՐՏ

Մարտը նման է կնոջ խասյաթին,
Փոփոխվում է միշտ ուզած սահաթին,
Ճամփան կլցնի թանձր մշուշով,
Թմբուկ կզարկի հեղեղի ուժով:
Ձյուն, անձրև կանի թափով միալար,
Սառույց կպատի գետերին երկար
Եվ կարկուտ կանի հրաշք ու չքնաղ,
Քամի կբերի սարերից պաղ-պաղ,
Արևն էլ ամպի ձեղքից կժպտա,
Ջերմությունը իր ամենքին կտա,
Մարդուն մնում է նստել, դիմանալ,
Խելառ մարտ ամսվա խաղով հիանալ:
9 մարտի, 2012 թ.

### ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆ

Արդար, թափանցիկ շողերի խոսքով
Ընտրություն արին կեղծիքի քողով,
Իրենց ուզածին դարձրին թագավոր,
Գնա , խեղճ ընտրող, փնտրիր մեղավոր:

Կեղծիքը, սուտը բռնել են աշխարհ,
Կաշառքն է ծաղկել պաշտոնի համար,
Արդար ընտրություն լոկ մահը կանի,
Երբ ողորմածը գերեզման տանի:
7 մարտի, 2012 թ.

### ԼՈՒՍԱԲԱՑԻ ՀՈՎԵՐՈՎ

Լուսաբացը հովերով
Խինդ է բերում սրտերին,
Արեգակը նոր օրով
Շող է տալիս արտերին:

Ժամանակը հուզառ
Թափ է առնում անտրտում
Եվ ջանքերով անձնվեր
Կյանքն է հորդում անդադրում:

Բայց քամին է ուժգնորեն
Կտուրներին շվշվում,
Դուրս է գալիս, փաստորեն,
Լուսաբացն է սվվում:

Ու տաշտակին հակվելով
Հին լվացքն է մարդ անում,
Լուսաբացը վարգելով
Իր իլիկը պտտում:
11 մարտի, 2012 թ.

### ՄՆԻՆԵՐ

Մութն ու լույսը իրար խառնած,
Նա քուն ունիմ, նա դադար,
Հայսը էլավ ծոծաս կնաց,
Եպ օր դեսավ չունի քար:

Դարիս էգավ օնծավ բարաք,
Դայրըս չիդիմ ալ վում ասիմ,
Առոխճուտինս ըղավ խարաբ,
Գարող մածի սիրող հայսիմ:

Թութունլուղը խողին ա,
Այդին ընտի ջոտին ա,
Չարոխն առավ յոն նեդեց,
Օտկին հիմի փոտին ա:

Հավըն ալի մռալդեծ,
Օմբրետ կոռաց, ցածգոտկեց,
Համպերեծակ, սուս գեցակ,
Հնճուկ արև ջառակեց:
27 մարտի, 2012 թ.

### ԳՈՎՔ

Ռուսաստա՛ն, ապրես,
Տվիր տուն ու տեղ,
Երազներ պես-պես
Կյանք առան շքեղ:

Քո ստեպներին
Խոնարհ եմ ես միշտ,
Տաք է իմ սրտին
Ձմեռն անգամ խիստ:

Հայաստան երկրի
Մեջքին ես կանգուն,
Որ հզոր լինի
Ընդդեմ թշնամուն:
28 մարտի, 2012 թ.

### ՔԱՌՅԱԿՆԵՐ

Ռուսաստանում, վերջապես,
Հացահատիկ բոլ ստացան,
Մարդկանց փորը, իսկապես,
Եվ աչքերը կշտացան:

Ռուսաստանը ընդերքով
Եվ հարուստ է տարածքով,
Բայց մուժիկը խորքերում
Ողորմած է իր կայքով:

Երանի տանք ռուս մարդուն,
Որ զգոն է և արթուն,
Սահմանները հայրենի
Երբեք չի տա թշնամուն:

Հայ զինվորը Մեծ կռվում
Դիպուկ էր ու քաջարի,
Ուստի պարեց Բեռլինում
Ավանդական «Քոչարի»:

Ռուս մարդու հետ թև-թևի
Ճամփա գնա համարձակ
Եվ կհատես դների
Գլուխները անքանակ:

Համակրանքով դեպի քեզ
Ջուր ձգտեցի ամեն օր,
Դու խրված ես մշտապես
Գործերի մեջ կարևոր:

Գայծ Գաբեղին երանի,
Ինչ էլ ուզի միշտ կանի,
Փախցրեց բերեց իրեն կին
Գյոզալ աղջկան Հերանի:

Տիեզերքը փառավոր
Սև ամպերով մթագնեց,
Երբ Դիլիմը մեղավոր
Իր կնոջը համարեց:

Մի՛ հավատա Պոլիսիդ,
Թե քեզ ձրի կբուժի,
Փողդ չու տ տուր բժշկին,
Առողջությունդ չտուժի:

Նորություն չէ, ասեմ քեզ,
Թեկուզ Պոլիս էլ ունես,
Հիվանդանոց թե ընկնես,
Դեղեր ինքդ պիտ գնես:

Տեսանք այնքա՛ն ավեր, ցավ,
Մարդը մարդուց խորթացավ,
Ցրվեց ազգը աշխարհով,
Գնալ-գալը վերացավ:

Քվեարկեց մի պառավ
Հույսը վառ ապագայի,
Բայց երբ խեղճը մահացավ,
Փող էլ չուներ դագաղի:

Արգելեցին զարեցուր
Խմել հիմա փողոցում,
Ծարավ մարդը գնա ու՞ր,
Երբ փող չունի գրպանում:

Ընտրեցին նրան երկրի ղեկավար,
Բայց լավ կլիներ սպորտի նախարար,
Մինչ նստել է նա հին ու նոր պոստում,
Տալիս է անվերջ զանազան խոստում:

Գործարարներ ունենք վայ
Փողի կույտով սեփական,
Բարեգործ չէ ամեն հայ,
Որպես Գագիկ Ծառուկյան:

Գագիկի պես բարի հայ
Հազիվ ուրիշ գտնվի,
Ունեցածից հանի փայ
Եվ ամենքին նվիրի:

Անվերջ պատծուն աղոթում,
Հա յ, ինչո՞ւ ես քեզ խաբում,
Ծառուկյանին աղոթիր,
Նա է բարիք պարգևում:
29 մարտի, 2012 թ.

***

Նա կին առավ լեզվանի,
Դժոխք զցեց իր տունը,
Ու չգիտի ի՞նչ անի,
Չխանգարի իր քունը:

Մի մարդ ապրեց շատ երկար
Եվ ծերացավ, խիստ հոգնեց,
Տերությանը իր տկար
Մահը եկավ վերջ տվեց:

Սուր ատամներ զայլը ուներ,
Բախտը, սակայն, չբերեց,
Հանդիպեցին ոսկրոտ այծեր,
Ատամները ջարդոտեց:

Շլի աչքին երկու շուն
Ելան դեմը հաչեցին,
Ծեծեց մեկին նա իսկույն
Եվ մյուսը կորավ աչքին:

### ԱՆԿՈՒՇՏ ԵՎ ԱՂՔԱՏ

Պալատներ ուներ բազում,
Ավելին էր երազում,
Կարիքի մեջ զօր-գիշեր,
Անկուշտ մարդն էր հա տանջվում:

Իսկ մի աղքատ իր օրում
Ունեցածով գոհ մնաց,
Հանգիստ ապրեց ողջ կյանքում,
Կերավ, խմեց և խնդաց:
10 ապրիլի, 2012 թ.

# ШАШЛЫК ДЛЯ ДЯДИ МИСАКА



## Невыдуманный рассказ

- Не лезь, не лезь, тебе говорят!
- Кто лезет? Кто лезет? Я лезу? Я под танки лез, когда тебя на свете еще не было!
- Послушайте, прекратите, стыдно!
- Как вам не совестно, взрослый человек!
- Ара, Бго, дай три кило!
- Не толкайтесь!
- Не лезьте, все равно я вас не пропущу!
- Бго, вон того, что в углу лежит.
- Вы не имеете права!
- Шесть рублей... Вай, держи!
- Нет, я имею право!
- Бго джан, мне пять с хвостиком.
- Нет, не имеете права! Покажите вашу книжку!
- Держи свои с хвостиком. Не забудь на шашлык из того хвостика пригласить.
- Вы не имеете права! Да кто вы такой?
- Ага, ага, нет у вас книжки! Бго, не давай ему мяса!

Толстопузый краснощекий Баграт, в народе – Бго, бог и царь мясного отдела... Еще бы - в восьмидесятых-то годах! С многоопытной усталой улыбкой слушал он бесконечные ссоры, распри, крики, а бывало, визг и восклицания по ту сторону прилавка. Могло показаться, что он ничего не понимает и потому ему все равно, кому отпускать мясо – ветеранам войны, имевшим право брать мясо, да и не только мясо, без очереди, наглым бабам или знакомым спекулянтам.

На самом деле он прекрасно знал, что у многих из так называемых ветеранов книжки куплены за большие деньги, – некоторые даже родились во время войны. Настоящие-то фронтовики всегда стоят молча, глядя перегоревшими глазами на весь этот сыр-бор, из нагрудных карманов торчат краешки корочек, память о годах, о которых он знает лишь понаслышке да по экрану телевизора. Знал он, что и наглых баб различать надо. Он делил их на три категории: наглых, потому что без горла и локтей останешься без мяса, – все отдадут спекулянтам и ветеранам; наглых, потому что растили детей без мужей, а детей кормить надо; и наглых, потому что наглые. Вот эту третью категорию он больше других уважал - чувствовал в них родную, крепкую, необходимую в жизни хватку. Знал он также, что часть мяса разойдется через спекулянтов по три и четыре рубля, а по вечерам его будут предлагать тем, кто сейчас на работе, кто работает за городом, кто не может в перерыв бегать по магазинам или оставить дома грудных детей или больных...

Все знал Бго, знал и преспокойно обвешивал и тех, и других, и третьих: вон тот дорвавшийся до прилавка моложавый «ветеран» даже не смотрит никогда на весы, даже завернуть мясо не дает как следует, из рук рвет, а тот высокий плотный старик молча протягивает деньги, исподлобья глядит на весы, а если что и замечает, все равно не говорит ни слова, а бабы – так те вообще ни черта не смыслят, только головой туда-сюда крутят, пока он ловко гири переставляет, а дошлые редко попадаются. Знакомых тоже грех граммов на сто-сто пятьдесят не обвесить, но мясо для них, конечно, надо выбрать поприличнее, без сухожилий, а уж костей подбросить – только по их же просьбе.

Возвращаясь по вечерам с работы, Бго проходил через двор, где сидели на лавочках, играли в нарды и шахматы, возились с детьми, гоняли мяч, развешивали белье, мыли ковры, чинили мотоциклы и машины его утренние покупатели, их родители и дети – почти все население квартала, которое снабжал мясом лично он – король мясного пассажа Бго...

Сиран вышла на балкон и оглядела двор. Мальчики были очень заняты: сосредоточенно разглядывали свежую вмятину на левом крыле соседского «Жигуленка».

- Гево, Петик, кончайте свои дела и поднимайтесь...

Призыв был чисто символическим – никаких дел у них во дворе не было, а если бы даже и были, все равно они стали бы дожидаться отца.

Наконец они появились – Карапет с сыновьями, как называли их во дворе. Карапет женился очень поздно, старшему сыну было семнадцать лет, младшему – четырнадцать.

Сиран уже накрыла на стол: свежая зелень, салат из редиски, сыр, на первое – суп с макаронами, на второе – жареный картофель с луком, на десерт – домашний компот из яблок.

Мясо ели только по праздникам, и покупал его Карапет на рынке втридорога. В магазин он никогда не заходил, все покупки делала Сиран. Во дворе часто шушукались, что у Карапета нет книжки участника войны, потому и мяса он никогда не покупает. Пытались выяснить у сыновей, почему отец не воевал, но те отмалчивались. Их немногие друзья, возможно, что-то и знали, но тоже отмалчивались.

- Сказать нечего, вот и молчат. Другие сражались, а он в тылу отсиживался, – решили досужие кумушки, покачав головами.

Так и укрепилось мнение, что книжки у него нет, потому что не воевал. Нехорошо, но что поделаешь...

Натэл умирала.

Как вам рассказать, кто такая Натэл? Начать придется издалека, с двадцатых годов нынешнего века. Жили они в обычном ереванском дворике – на окраине таких много было. Посередине двора когда-то был маленький бассейн, но трубы давно заржавели и засорились, какое-то время площадка пустовала, потом там кто-то смастерил грубые самодельные качели. Они скрипели, шатались, качались и дрожали, но детвора и таким была рада.

Двухэтажное деревянное здание было похоже на коротенькую букву «п», на втором этаже по всему внутреннему периметру тянулись балконы, первый этаж считался полуподвальным. Там никто и не жил, там были чуланы и погреба. Жизнь шла на балконах – на виду у всех... Отец рассказывал Карапету, что когда-то здесь жили другие люди и жили совсем по-другому. Потом все разъехались, из старых жильцов остались только он да Мисак, его друг. Отец и Мисак женились одновременно, и сыновья их – Карапет и Мишик – родились в 1920 году с разницей в три месяца. Еще через два года у дяди Мисака родился второй сын, Самвел, а у Карапета появилась сестра, Гаяне. Вот и росли четверо детей, росли и дружили, и не как соседи, а как родные.

Не знаю, стоит ли об этом так подробно рассказывать, но иначе вы не поймете, почему в нашем квартале в начале 80-х случилось такое необыкновенное происшествие.

Свадьбы были в 1919 году, очень голодном. Натэл, жене дяди Мисака, было тогда 15 лет. Родных у нее не было, все погибли на дорогах беженства, в Ереван она попала из американского приюта.

⊃28

У двух семей многое было общим – и подвал, где хранились скудные припасы, но которые всегда можно было позаимствовать, не спрашивая у соседа, и дрова, заготовленные и сложенные поленницей на балконе, и длинный ряд кушеток, тянувшийся вдоль перил с резными деревянными балясинами, похожими на ножки балерины.

Грянул 41-й год... На войну ушли пятеро мужчин и одна девушка: отец Карапета, дядя Мисак, трое их сыновей и Гаяне, окончившая медтехникум. Молодых отправили в Украину, в один полк.

Первой погибла Гаяне – их санитарный поезд разбомбили в предгорьях Кавказа.

Из шестерых с войны вернулся только израненный Карапет. Дома он никого не застал. Мать умерла, соседка, тетя Натэл, получившая три похоронки, выглядела изможденной старухой, а было ей всего сорок...

На войне все как в жизни, только гораздо страшнее, «придурочных мест», где можно отсидеться, очень мало, и цена у жизни совсем другая. Кто-то прячется за чужой спиной, кто-то в эту спину стреляет, а кто-то крутит колесо, работающее на победу, и скрип колеса смешивается с хрустом его костей.....

Он помнил только, как его и Мишика накрыло минной волной. Потом он узнал, что Мишик погиб сразу, а его, контуженного, вынесла с поля боя медсестра Наташа Хохлова, поползла обратно, за телом Мишика, и погибла. Наташа Хохлова осталась в его памяти чудесной восемнадцатилетней девчонкой, которая всегда улыбалась. А вот он с того дня улыбаться разучился.

В госпитале он пролежал почти полгода, там и узнал сперва о смерти отца и дяди Мисака, потом сестры и товарищей детства. Вокруг него было много людей с похожей судьбой, но легче от этого не становилось.

Вот так из двух больших семей остались два человека – он, Карапет, да вдова дяди Мисака. Работала Натэл в школе учительницей. Образования у нее не было никакого, она учила детей кройке и шитью, домоводству – тихая, спокойная, сдержанная. Ученики любили ее за то, что никогда не сердилась, и коллеги уважали за доброту и тихую неназойливую мудрость...

Так и прожила она всю жизнь одинокой, каждый день поминая про себя недобрым словом войну, отнявшую у нее мужа и двух сыновей. Никогда ни на что не жаловалась, просто медленно угасала. Последний год все больше лежала, вставала редко. Для Карапета она была как бы второй матерью, и, зная это, Сиран старалась всячески помогать больной: каждый день заходила к ней по нескольку раз, приносила завтрак и обед, меняла постель, стирала постельное белье. А ела Натэл так мало, что удивительно, как еще хватало у нее сил вставать, ходить по комнате...

Мы жили в том же квартале. Я, тогда еще мальчишка, часто ходил с отцом в соседний двор, сидел у бывшего бассейна, слушая разговоры взрослых, и постепенно узнал историю Карапета. Она как мозаика складывалась из разных кусочков: двор в начале века, поздние пристройки, разъехавшиеся кто куда соседи, росшие вместе четверо детей, из которых остался только Карапет. Как часто я слышал там разные жалобы на детей – и такие они, и сякие, и непослушные, и управы на них никакой нет, и вообще годятся лишь на то, чтобы в старости родителям «глаза закрыть» да похоронить...

А как же тогда такие, как Натэл? Кто виноват, что проклятая война отняла у нее и мужа, и сыновей, и человек одиноко доживает свои дни? Хорошо еще, повезло с соседями, а иначе что бы она делала... А что делают другие? Таких, как она, сотни тысяч, схоронивших детей на войне. Молодые снова замуж выходят, новую семью заводят, но Натэл – это совсем другое. Она так и не смогла забыть мужа. А дети? Младшему было девятнадцать, старшему – двадцать один. Их фотографии и похоронки – единственное дорогое в жизни – она хранила в старой деревянной шкатулке матери Мисака. А вдруг настал бы день, когда эти похоронки оказались бы ложными? Есть ли на земле большее зло, чем война, не знаю...

Как-то Сиран сказала, что Натэл совсем плоха, может, скоро богу душу отдаст. Зашел бы, поговорил, может, у человека последнее желание есть. Карапет зашел утром перед работой. Она и вправду еле дышала. Доктора вызвали. Тот сказал, что умирает человек от старости... Но ей только 77!

– Нет, – грустно сказал доктор, – весь жизненный ресурс вышел, силы кончились, два или три дня ей осталось. – И добавил какое-то мудреное слово, мол, так в медицине такое состояние называется.

Вечером Карапет еще раз зашел, посидел возле постели Натэл, и вдруг Натэл прошептала:

– Помнишь, когда Мисак шашлык готовил, какой необыкновенный запах летал по всему двору. Он всегда в годовщину нашей свадьбы шашлык готовил... Я этот запах помню... Если бы его еще раз почувствовать...

У Карапета словно что-то твердое и грубое сдавило горло. Он резко встал:

– Обязательно, тетя Натэл, обязательно сделаю...

Рано утром он пошел на рынок, но как назло, по закону какой-то еще никем до конца не изученной подлости, мяса в этот день не было. И Карапет понял, что придется брать его в магазине.

В магазине стоял обычный гвалт, кипела ругань. Карапет занял очередь и почему-то стал мишенью насмешливых взглядов и возгласов. В какой книге неписаных человеческих законов сказано, что человеку можно быть таким злым, таким подлым? Вот стоит человек в очереди, никому не мешает. Нет, надо непременно человека задеть, обидеть. Почему?

– Ну если человек не воевал, должен, конечно, в очереди стоять, – сказал пижонистый тип в красной куртке.

– Не воевал, и книжки нет, – подхватил толстый здоровяк в кожаном пальто.

– Дай мне пять кило фарша, – помахал книжкой под носом у Бго наглый обрюзгший детина, которому в сорок пятом году не могло быть более десяти лет.

Карапет понял, что мяса ему, скорее всего, не достанется. С тяжелым сердцем вышел он из магазина, а когда через десять минут вернулся, то все просто остолбенели. Вошел человек в военном кителе с таким количеством орденов и медалей, какого никогда в жизни даже в кино не видели омещанившиеся жители нашего квартала, давно забывшие, что такое честь и совесть. Все с таким изумлением уставились на него, что Карапет разъярился.

– Книжку вам? – закричал Карапет. – Книжку? Вот вам книжка! – он сорвал с груди медаль и запустил в голову пижонистому типу.

– Вот вам книжка! – и Варшавой – по мерзавцу!

– Вот вам книжка! – и Будапештом – по здоровяку!

– Вот вам книжка! – и Берлином – по наглому детине!

– Вот вам книжка! – и Веной – по подлому спекулянту!..

Не помнил Карапет, как выбежал из магазина, не узнал, что потрясенный Бго сам принес к ним мясо и категорически отказался брать деньги, как соседи, пораженные небывалым происшествием, сами сделали шашлык под балконом Натэл. Он лежал ничком на тахте и вспоминал, как погибли отец и Наташа Хохлова, как разбомбили санитарный поезд, в котором ехала на фронт Гаяне, как он впервые после войны прочитал у тети Натэл похоронки на Мишика, Самвела и дядю Мисака... Он пролежал ничком весь день, ни с кем не разговаривая. Сыновья все поняли – они собрали и бережно уложили в коробку награды отца, положили коробку на стол и на цыпочках вышли из комнаты. Слишком многое они в этот день передумали – о людях, никогда и пороху не нюхавших, никого не потерявших на войне, но сумевших так точно уловить подлый запах бытия эпохи застоя, обзавестись военными книжками, чтобы доставать по ним мясо, а бывало, и другие продукты.

Наверное, это был единственный в мире шашлык, к которому никто не притронулся.

Куда его унесли и кому отдали – так никто и не узнал. Да это и неважно.

Я никогда не забуду тот день, когда Карапет срывал с себя награды и швырял в негодяев. Мне было тогда лет десять, я ничего не понимал, но запомнил все хорошо.

А Карапет? Карапет больше никогда не заходил в магазин и не надевал китель с наградами.

***Анаит ХАРМАНДАРЯН.***

# МОИ РУССКИЕ СМОТРИНЫ
## *или* эссе о русских женщинах

Мой покойный отец мне всегда внушал страшный образ русской женщины на примере царицы Екатерины. И каждый раз эти «проповеди» завершались родительским наказом:

- Никогда не женись на русской. Они тираны, не покорны, властны, строптивы, капризны и держат мужей под каблуком.

Мой отец в своей жизни никогда не общался с русской женщиной и можно сказать, что даже их не видел. Поэтому, для меня до сих пор остается загадкой, почему он об этом так назойливо и убедительно говорил? Но самое странное, что из моих трех братьев эти разговоры он вел преимущественно со мной. Неужели у него был дар пророчества, и он предвидел, что его младший сын будет обучаться в России и проведет свою молодость в Москве? И что самое фантастическое, что именно этот младший сын женится на русской женщине.

В каком это страшном сне можно было предвидеть, что родившийся в Турции, на берегу Средиземного моря в исторической Киликии мальчик, чудом спасаясь во время геноцида заключит брак в Дамаске с молодой армянкой, рожденной в разгар геноцида в центральной Турции – Кесарии, у которых в высокогорном армянском селении родится шестой ребенок – сын, который будет жить в Москве и женится на русской...

***

Екатерина Вторая (при рождении София Августа Фредерика фон Анхальт-Цербст-Дорнбург), как это следует из ее имени, никак не смогла бы своими повадками и развратным образом жизни олицетворять, тем более охарактеризовать образ русской женщины.

Мой отец, который репатриировал из Сирии в Армению в 1946 году, несмотря на образованность, плохо знал русскую литературу, может потому, что вообще не владел этим языком и образование получил в Сирии. Может поэтому он не употреблял поговорку Некрасова о русских женщинах для большей убедительности.

С другой стороны, любой любопытный человек захочет познать женщину, которая в горящую избу войдет и коня на скаку остановит.

Стремление переживших геноцид моих родителей предотвратить возможный смешанный брак сына понятно, и это никак нельзя приписать расизму или русофобии.

В них глубоко сидел инстинкт самосохранения, как и у всех армян, которые, зная, что творится в Советском Союзе после войны тем не менее, репатриировали на родину, оставляя свои обжитые места и более-менее налаженный уклад.

В период геноцида армян турками (1915-1921 г.г) была истреблена больше половины нации, а большая часть выживших расселялись по миру.

В этих условиях единственную надежду возрождения нации армяне связывали с оставшейся под властью коммунистов Советской Арменией, куда и без долгих рассуждений и раздумья после объявлении Сталиным об открытии границ они ринулись из Турции, Сирии, Ливана, Греции, Египта, Франции, США и Ирана.

По вопросу репатриации армян этого периода опубликовано множество статьей. Все они едины в том, что эту акцию никак нельзя оценить, как добрую волю Сталина объединить армян и спасти их. Это было бы весьма странным проявлением человеколюбия со стороны людоеда и сатрапа.

Объявив репатриацию армян, Сталин преследовал две главные цели. Во -первых ослабить, а если удастся полностью подавить свободомыслящую и деятельную армянскую диаспору за рубежом, чтобы беспрепятственно осуществить максимально полное уничтожение армян. Вторая цель является логическим продолжением первой. После освобождения территории Армении туда заселяются грузины, которые (за редким исключением) и до сих пор свято чтят память этого людоеда.

В истории человечества имеется много мистических, необъяснимых фактов, которые проще констатировать, но не трактовать. К таким я причисляю два факта. Первый – возрождение армян после геноцида, вплоть до создания суверенного государства совместно с Арцахом (Карабах). Трудно вообразить, как в 1918 году на поступах к Еревану (в Сардарабаде) вооруженные вилами, киркой, лопатой, всяким примитивным оружием армянское народное ополчение разгромило организованную и по численности в сотни раз превосходящую турецкую армию?

Второй мистический факт – срыв программы Сталина полного переселения армян в Алтайский край и заселение на освободившиеся территории грузин.

***

При поступлении в Ереванский государственный университет на экзамене по армянскому языку и литературе я написал сочинение на тему «Образ В. И. Ленина в произведениях Егише Чаренца».

Как и что писал, не помню, но помню ажиотаж вокруг этого сочинения, которое экзаменационная комиссия оценила на отлично.

Надо полагать, что члены комиссии, будучи профессионалами, знали все известные монографии и комментарии по задаваемым темам, и никак не смогли угадать, откуда же этот 16-летний парень взял и выдал такой пафосный и грамотный, весьма оригинальный текст, в котором, можно сказать, по новому раскрывался образ Ленина в поэзии Чаренца?

Была попытка уговаривать меня переходить на филфак. А я уже сдавал на отлично химию, физику и математику.

Понятно, что я и думать не хотел о филологии, так как был уверен (и до сих пор думаю так), что литературная грамотность - это не профессиональный признак, а естественный атрибут существования.

В. И. Ленин первый «русский» человек (в моем наивном представлении), о котором я так проникновенно и с верой написал (можно сказать посвятил) художественное произведение.

На самом деле здесь сыграла большая роль моего поклонения к Чаренцу как идолу, как непревзойдённому мастеру слова. Я им бредил, ходил по улицам и громко декларировал его стихи, радовался и восторгался каждой его фантастической фразой.

Поэтому бесспорность «святого» образа Ленина у меня не вызывало сомнения.

До сих пор мне кажется парадоксом, почему Чаренц (ровно и как Маяковский в России) так превозносил Ленина? Если считать это расчетливым ханжеством или сделкой с совестью, так почему же он также не поступил, когда его прямо обвинили в том, что он не воспевает Сталина, и за что и поплатился жизнью в 1937 году в 40 летнем возрасте? Значит, Чаренц действительно верил в то, о чем он писал.

Я в свою очередь верил в Чаренца и к моему великому сожалению долго находился в позорном состоянии почитания этого сверх аморального революционного деятеля - Ленина, у которого, как нестранно, на первый взгляд русская фамилия - Ульянов.

В генеалогии Владимира Ильича Ульянова прослеживается пять ветвей: калмыцкая, чувашская, еврейская, немецкая и шведская. Первые две ветви относятся к отцовской линии, три других — к материнской.

Вот так тебе и образ «русского» человека, вождя российской революции.

Трудно вообразить нечто аналогичное в армянской, да и в любой другой этнической действительности. Столь судьбоносный переворот, решающую судьбу нации осуществляют, а далее и развязывают гражданскую войну искатели приключений, как тогда было в моде, пламенные (или профессиональные) революционеры, кучка нерусских психически неполноценных головорезов.

Внимательно перебирая перечень таких одержимых деятелей коммунистического переворота, я не смог подобрать истинно русского человека, и это объяснимо. Настоящие русские аристократы, преданные патриоты России сражались в ряду белой гвардии, чтобы спасти родину от красного террора.

Попробовал представить аналогичную ситуацию я Армении, но никак не смог вообразить такого кошмара. Кто, как, каким образом? А как армяне допустят, что у них дома диктуют не армяне?

Вот такими потрясениями и разочарованиями становилась моя юношеская идеология, когда я созревал для творческой деятельности в Армении, и, не подозревая

⊃30

